ՊԻՈՆԵՐ

8 ՄԱՐՏԻ
կանանց միջազգային օրն է



# ՈՐԴԻՆ

*ԱԼ. ՏՎԱՐԴՈՎՍԿԻ*

Ձեռքերիդ առած, քնքշանքով անհուն,
Ասացիր՝ ապրի՛ր, մեծացի՛ր, տղա՛ս,
Ընտրեցիր մի լավ, գեղեցիկ անուն,
Որ ամբողջ կյանքում կուղեկցի նրան:

Գուցե և մի օր (մի քիչ համբերիր)
Կլսես, ո՛վ մայր, խորին բերկրանքով,
Թե ոնց են նրա անունը տալիս
Մարդիկ ամենուր՝ սիրով, հարգանքով:

Դու այն ժամանակ կհրճվես անշուշտ,
Քո առաջնեկով՝ գոհ ու բախտավոր,
Որ քո սերը չէ միայն վայելում,
Այլ՝ շատերին է կյանքում հարկավոր:

Հեռու քաղաքում գուցե ապրի նա
Եվ կատարի իր սխրանքները վես,
Ու դու կլսես, ·կհպարտանաս,
Ինքդ քեզ համար անձայն կխոսես.

— Ե՛ս եմ կյանք տվել նրան իմ կյանքով,
Անքուն մնացել որքա՜ն գիշերներ,
Կերակրել նրան իմ արդար կաթով
Եվ ե՛ս եմ նրա անունը դրել:



# Անխոսք նվիրումի շարունակությունը

*Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ*

*ՀՌԻՓՍԻՄԵ ՍԱՐԳՍՅԱՆ*

*Դաշտամիջյան ճամփով քայլում ենք երկուսս՝ տատ ու թոռ: Շուրջը կանաչ, հովից սրսփող արտերն են: Տատի մեջքին չոր ցախի կապոց կա, գոգնոցում՝ մատղաշ եղինջ, շուշան, սիբեխ:*

*— Տա՛տ, հոգնեցի,— ասում եմ ես և նստում պատահած քարին: Ինքն էլ հարմար տեղ ընտրելով՝ ցախը ցած է դնում:*

*— Տա՛տ, շուտ տեղ կհասնե՞նք,— ասում եմ...*

*— Շո՛ւտ, քիչ որ հանգստանանք, ավելի արագ կքայլենք:*

*Ես նրան այդպես եմ հիշում. խիստ կոշտացած, ճաքճքված ոտքերով ու ձեռքերով, ցախի կապոցը շալակին, գոգնոցի մեջ՝ կանաչ, հոտավետ սիբեխ, եղինջ ու շուշան: Իսկ ես միշտ նրա հետ եմ՝ տանը,*



# ՕՐՈՐՈՑ

ՍՈՍ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Դու քո մեղմիկ երգերով,
Քո օրորով մտերիմ
Քաղցր քուն ես պարգևել
Իմ մանկական աչքերին:

Օրորո՛ց իմ սիրելի,
Օրորո՛ց իմ հարազատ,
Նման մորս ձեռքերին՝
Դու մաշվել ես օրն օրին:

Մաշվել ես ու հնացել,
Լռել են քո երգերը,
Սակայն սուրբ ես մնացել,
Ինչպես մորս ձեռքերը:



դաշտում, արտում:

— Տա՛տ, հեքիա՛թ պատմիր,— ասում եմ նրան,— տխուր աղջկա հեքիաթը:

Ու ամեն ինչ սկսվում է նորից: Ծանոթ մեղեդու նման նրա ամեն մի բառը շոյում է իմ լսելիքը:

...Ուրախ է եղել փոքրիկ աղջիկը, անչափ ուրախ: Նա առաջին օրը դպրոց է գնացել, սովորել հայոց այբուբենի առաջին տառը՝ Ա-ն: Ուսուցիչը ասել է. «Ուրախացի՛ր, Անահի՛տ, այսօր սովորեցինք ոչ միայն հայոց այբուբենի, այլև քո անվան առաջին տառը»: Ուրախացել է աղջիկը, աշխարհով մեկ եղել: Դասից հետո տուն վազելով՝ բակի սալաքարերին ածուխով գրել է իր սովորած առաջին տառը, ցույց տվել բոլորին: Ուրախացել են ծնողները և այդ գիշեր երջանիկ անկողին մտել:

Բայց առավոտյան գուժով է արթնացել գյուղը:

— Վե՛ր կաց, աղջի՛կս,— արթնացրել են նրան ծնողները,— կոտորած է սկսվել, պետք է փախչել:

Ու փախել է աղջիկը ծնողների հետ, հուսալով, թե կվերջանա արհավիրքը և ինքը կրկին դպրոց կգնա, կսովորի հայոց այբուբենի հաջորդ տառերը:

— Իսկ ի՞նչ եղավ աղջիկը,— հարցնում եմ ես:

— Կորցրեց ծնողներին, որբացավ...

— Եվ չսովորե՞ց աղջիկը հայոց այբուբենի մյուս տառերը,— հուզված ասում եմ ես:

— Չէ՛,— տխուր գլուխն օրորում է տատը,— չսովորեց: Կարոտ մնաց գրքին ու գրչին, իր անունն անգամ գրել չսովորեց:

Տատի աչքերը լցվում են թախիծով: Նրանք նայում են հեռո՛ւ, հեռո՛ւ, ուր մնացել է հեքիաթի աղջկա հայրենի գյուղը, դպրոցն ու ուսուցիչը:

Ես գիտեմ, որ դա հենց իր՝ տատի կյանքի պատմությունն է, հաստատ գիտեմ, բայց հարցնում եմ.

— Տա՛տ, իսկ դու տեսե՞լ ես այդ աղջկան:

— Չէ՛, որդի՛ս, չեմ տեսել,— չգիտեմ ինչու խուսափում է նա,— չեմ հիշում... Գնանք, հիմա անասունները դաշտից տուն կգան,— ասում ու վեր է կենում տեղից: Ես լուռ հետևում եմ նրան:

...Ես հաճախ, շատ հաճախ եմ երազումս տեսնում նրան... Փոքրի՜կ, փոքրիկ մի աղջիկ ուրախ թռչկոտելով դպրոց է վազում, գնում է, որ սովորի հայոց այբուբենի հաջորդ տառերը, որ բարակ ու գեղեցիկ տառերով գրի իր անունը:

Մի անգամ ես ուրախ-ուրախ պատմեցի տատին իմ տեսած երազի մասին ու հարցրի.

— Իսկ դու չե՞ս տեսնում այդ երազը, տա՛տ:

Նա տխուր ժպտաց:

— Չէ՛, որդի՛,— ասաց,— չեմ տեսնում, ես այլևս չեմ կարող այդպիսի երազներ տեսնել:

Ես տխրեցի, որ տատը այլևս չի կարող տեսնել հեքիաթի աղջկա տխուր երազի ուրախ շարունակությունը:



# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ

ԳՅՈՒՆԹԵՐ ՖՈՅՍՏԵԼ

Մեր քաղաքում հազար ընտանիք է ապրում: Գուցե և մի քիչ ավելի: Բայց մեր մեջ ասած, ես միայն մեր ընտանիքում կուզեի ապրել: Իհարկե, մեր ընտանիքում էլ են լինում անախորժություններ ու հուզումներ: Երբ ես հիշում եմ անցյալ տարվա Մարտի 8-ը… Ա՛յ, իսկական արտասովոր պատմություն: Բայց երևի դա այնքան էլ արտասովոր չէ և կարող է ամեն օր ու ամեն տեղ պատահել: Այս իսկ պատճառով ավելի լավ է ուղղակի պատմեմ այդ պատմությունը:

Մարտի 8-ն էր, ավելի ճիշտ՝ օրվա երկրորդ կեսը: Մայրիկը եկավ աշխատանքից և իսկույն մտավ խոհանոց: Փոքր եղբայրս՝ Ուլֆը գրպանից մի գույնզգույն փաթեթ հանեց և հպարտ ասաց.

— Շնորհավորում եմ կանանց տոնի առթիվ:

Մայրիկը համբուրեց Ուլֆին: Հետո նայեց ինձ ու ավագ քրոջս՝ Հուտտային: Ես մինչև ականջաբլթակներս կարմրեցի: Հուտտան ու ես մոռացել էինք կանանց տոնի մասին: Բայց մենք երկար չմնացինք ամոթահար: Զանգը տվին: Ես վազեցի դեպի դուռը: Հայրս էր:

— Կանանց տոնի մասին մտածե՞լ ես,— շշնջացի ես:

Հայրս շփոթվեց, հետո կրնկի վրա շուռ եկավ ու արագ վայր իջավ սանդուղքով: Մինչ այդ մայրս ընթրիքի սեղանը պատրաստեց: Նոր էր նա ձվածեղը մաս-մաս արել ու դրել ափսեների մեջ, երբ վերադարձավ հայրս՝ մի ծաղկեփունջ ձեռքին:

— Տոնդ շնորհավոր,— ասաց նա:

Մայրս ծիծաղեց ու աչքի պոչով հորս նայելով, ասաց.

— Ինչ լա՛վ է, Ռիխա՛րդ, որ ծաղկի խանութները դեռ բաց էին:

Հայրս ոչինչ չպատասխանեց, նստեց սեղանի մոտ ու կերավ իր ձվածեղը:

Հանկարծ մայրս ժպտաց, հերթով նայեց բոլորիս ու կամացուկ ասաց (նրա ձայնի մեջ հանդիսավորություն կար).

— Ինձ այսօր պարգևատրել են:

Հորս ձեռքից պատառաքաղն ընկավ սեղանին.

— Եվ որքա՞ն է գումարը:

Քույրս՝ Հուտտան ձեռքը գցեց մորս վզով.

— Հիմա երևի ես կստանա՞մ բաց երկնագույն մետաքսյա շրջազգեստը պարի դասերի համար:

Եղբայրս՝ Ուլֆը թռչկոտում էր սեղանի շուրջը.

— Մայրի՛կ, մայրի՛կ, դու ինձ համար ղեկով մեքենա՛ կգնես: Մեքենա՛, մեքենա՛:

Հայրս ձեռքը խփեց սեղանին.

— Ո՛չ, նախ մենք պետք է գնենք մի նոր ուղեգորգ նախասենյակի համար: Դա վերջապես ավելի անհրաժեշտ է:

Մայրս ստարոտի ժպտաց ու հանկարծ խոհանոցում լռություն տիրեց:

— Դա դրամական պարգև չէ:

Բոլորիս դեմքին հուսախաբություն երևաց: Մայրս խոր շնչեց.

— Ես պարգևատրված եմ Պրագայի տասնօրյա ճանապարհորդության ուղեգրով:

— Բայց դու ուզում էիր,— իսկույն ասաց Հուտտան,— իմ բլուզն հյուսել մինչև Բերբելի ծննդյան օրը:

Մայրս վշտացած էր: Նա հառաչեց.

— Դու երևի արձակուրդ ունես, Ռիխա՛րդ, և կարող ես իմ փոխարեն գնալ:

Ես տեսա, որ հայրս սաստիկ ամաչում է: Նա հազաց.

— Դո՛ւ կգնաս, Կա՛րլա, և վերջ:

Հուտտան մի քիչ էլ փնթփնթաց, բայց Ուլֆը արդեն վերին պահարանից իջեցրել էր մեծ ճամպրուկը:

— Կա՛րլա, դու ուղղակի զարմացած կմնաս, երբ տեսնես, թե առանց քեզ մենք ի՞նչ լավ ենք յոլա գնացել:

— Դե իհա՛րկե,— բացականչեցի ես,— մենք ամեն օր և՛ ճաշ կեփենք, և՛ լվացք կանենք:

Մայրս մեզ էր նայում: Հետո նրա ճակատի ծալքերը վճռականություն արտահայտեցին.

— Լա՛վ, ե՛ս կգնամ:

Երկու օրից մենք մայրիկին ու նրա մեծ ճամպրուկը ավտոկայան տարանք: Մայրիկը շարունակում էր մեզ խորհուրդներ ու խրատներ տալ, որոնք կարծես թե վերջ չունեին: Իմ քույր Հուտտան բարկացած թափահարեց գլուխը.

— Վե՛րջ տուր, մայրի՛կ, այդ





# ԴԵՊԻ ՊՐԱԳԱ

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

բոլորն արդեն մեր գործն է:

Մայրիկը լռեց: Մեքենան շարժվեց դեպի Պրագա:

* * *

Սկզբում, ճիշտն ասած, կարծես ավելի խաղաղ էինք առանց մայրիկի: Ես մոռացա մաքրել կոշիկներս, և ոչ ոք ինձ չնախատեց դրա համար: Ուլֆը բազմոցը տրամպլին դարձրած՝ ամբողջ օրը թռչում էր: Իսկ Հուստան, տանը նստած, օրը մի հաստ գիրք էր կարդում:

Տուն եկավ հայրս: Նա հագավ իր կեղտոտված տնային հագուստըն ու խսկույն ընկղմվեց բազկաթոռի մեջ:

Ինչպե՞ս էր մայրիկը դրա համար բարկանում: Այսպես մի որոշ ժամանակ մենք նստած մընացինք և մի ամբողջ հեռուստատեսային ծրագիր դիտեցինք: Հանկարծ հայրս վեր կացավ ու գնաց խոհանոց:

— Իսկ ո՞ւր է ընթրիքը,— գոռաց նա:

Հուստան նստել էր հեռուստացույցի առաջ ու տեղից չէր շարժվում: Վերջապես ընթրիք պատրաստելը աղջկա գործ է, մտածեցի ես, և նույնպես մնացի նստած: Միայն Ուլֆը վազեց հորըս մոտ՝ խոհանոց:

— Ես՝ գայլի պես սոված եմ, դա ես հաստատ կարող եմ ասել,— մոլտաց նա:

Հուստան կարծես ականջները բամբակ էր խրել: Հայրիկը եկավ ու անջատեց հեռուստացույցը:

— Ո՞ւր է ընթրիքը,— հարցրեց նա բարկացած և խիստ նայեց երկուսիս:

— Այդ ես չգիտեմ,— ասաց Հուստան հանդուգն և ուզեց հեռանալ սենյակից: Բայց հայրս լուրջ բարկացած էր: Նա ամուր բռնեց Հուստայի թևից և տարավ խոհանոց, բացեց հացի ամանը.

— Տանը ոչ մի փշուր հաց չկա:

Ուլֆը սկսեց նվնվալ.

— Ես քաղցա՜ծ եմ: Մինչև վաղը ես արդեն մեռա՜ծ կլինեմ:

— Հիմա՛ր աղջիկ,— մրթմըրթացի ես ու վերից վար նայեցի Հուստային: Հետո հանկարծ ըզգացի, որ իմ փորն էլ է վեցվեց անում: Այժմ բոլորս նստած էինք խոհանոցում և տանջվում էինք քաղցից:

— Ես այս բոլորը կասե՜մ մայրիկին,— նվում էր Ուլֆը:

Նա գնաց նկուղ և իր համար մի աման խնձորի հյութ վերցրեց, որ մայրիկը դեռ աշնանն էր պատրաստել: Նա վերցրեց նաև մի գդալ և սկսեց ուտել:

— Վե՛րջ տուր այդ քաղցրակերությանը,— ասացի ես ու ամանն առա Ուլֆի ձեռքից: Հուստան արդեն գդալ էր վերցրել, հայրս՝ նույնպես: Եվ որպեսզի նրանք իմ քթի տակից ողջ հյութը չկարողանան տանել, ես էլ սկսեցի կատաղի գդլել այն:

Հանկարծ հայրս վճռական դեմք ընդունեց: Նա ձեռքը խփեց սեղանին և Հուստային ուղարկեց նկուղ՝ կարտոֆիլ բերելու:

Էլ ի՞նչ երկարացնեմ: Մի կես ժամից մենք շրջապատել էինք խոհանոցի սեղանը և ախորժակով խաշած կարտոֆիլ էինք ուտում: Եվ հայրս մեզ պատմում էր, որ կար ժամանակ, երբ խաշած կարտոֆիլն ՝ընտիր կերակուր էր համարվում:

Պետք է որ այդպիսի ժամանակներ եղած լինեն,— թյո՛ւ, գրո՜ղը տանի:

Խաշած կարտոֆիլով ընթրելուց հետո, բոլորս միասին մի բաց նամակ գրեցինք մայրիկին. «Դու ամենևին չանհանգստանաս: Մենք բոլորս շատ լավ ենք: Հենց նոր ընտիր խորտիկներով ընթրեցինք»:

— Սա խաբեբայությո՛ւն է,— մոլտաց Ուլֆը և գնաց քնելու:

Հայրս մի քիչ բզբզաց իր մոտոցիկլետի վրա: Հուստան ու ես նստեցինք հեռուստացույցի առաջ և այդպես մնացինք մինչև ծրագրի վերջը: Ես ուրախությամբ բազմոցի վրա կքնեի, այնքան էի հոգնած:

* * *

— Այսպես չի կարելի շարունակել,— ասաց հայրս հետևյալ առավոտ:— Մենք պետք է աշխատանքը կազմակերպենք:

Եվ խսկույն աշխատանքի բաժանում կատարեց:

Հուստան պետք է գնումներ կատարեր, Ուլֆը՝ սենյակների փոշին մաքրեր: Ես պետք է կարտոֆիլ կլպեի, ամբողջ ընտանիքի կոշիկները մաքրեի և Ուլֆի հետ դասեր պատրաստեի: Իմ կլպած կարտոֆիլի հետ Հուստան պետք է բանջարեղեն ու միս եփեր:

Երբ ես դպրոցից տուն եկա, մեր դռան տակից ջուր էր հոսում ու քչքչալով վար իջնում աստիճաններով: «Անիծված ջրատար խողովակներն են պայթել երևի»,— բարկացա ես ու դուռը բաց արի: Ուլֆը չոքած գետնին, մի հսկայական լճակի մեջ, հատակի շորով դես-դեն էր քշում ջուրը:

— Ոտներդ լա՛վ մաքրիր,— մոլտաց նա,— հատակը լվացված է:



Ուլֆին փակեցի լողասենյակում, հետո ցամաքեցրի հատակի ջուրը, նկուղից կարտոֆիլ բերեցի ու սկսեցի կլպել:

Ես կլպում էի ու կլպում: Իսկ միջին թվով որքա՞ն կարտոֆիլ է պետք մի ընտանիքի համար:

Ավելի լավ է՝ երկու հատ ավելի, քան մի հատ պակաս, մտածեցի ես, ու կլպեցի մեր մեծ կաթսայով մեկ:

Հուտտան, իհարկե, դարձյալ ուշ եկավ: Նա միսը գցեց մի ամանի մեջ ու կատաղած սկսեց բանջարեղեն լվանալ: Եվ միաժամանակ սկսեց բարկանալ ինձ վրա, որ չափազանց շատ կարտոֆիլ եմ կլպել: Հետո բարկացավ Ուլֆի վրա, որովհետև նրա պիոներական սպիտակ բլուզը ամբողջովին թանաքի բծերով էր ծածկված: Մեկ էլ խոհանոցում վառված բանջարեղենի հոտ տարածվեց:

Եկավ հայրս: Նա կաթսան արագ վերցրեց կրակի վրայից և Հուտտային կանչեց խոհանոց: Հայրս նրան նախատում էր, որ բանջարեղենն այրվել է, իսկ միսը կոշտ է: Ուլֆն էլ նախատում էր ինձ, որովհետև ես նրան չէի օգնել թվաբանության դասը պատրաստելիս: Իսկ մենք բոլորս նախատում էինք հորս, որովհետև նա հետը հաց չէր բերել: Ի վերջո մենք նորից շրջապատեցինք խոհանոցի սեղանն ու խաշած կարտոֆիլ կերանք, այս անգամ՝ կարագով:

— Ամեն երեկո կարտոֆի՜լ,— դժգոհեց Ուլֆը և պատառաքաղը



նետեց սեղանին,— ես այս բոլորը կպատմեմ մայրիկին:

Այսպես անցան օրերը: Իհարկե, մենք մի փոքր կարգ ու կանոն սահմանեցինք մեր տնային գործերի մեջ, բայց մայրիկի բացակայությունն զգացվում էր ամեն տեղ ու ամեն րոպե:

Այժմ մենք կարող էինք մեր հեռուստացույցը վարձով տալ: Միայն Ուլֆն էր երբեմն դիտում մանկական հաղորդումները:

Հուտտան արդուկում էր մեր շորերն ու հետն էլ թնկթնկում էր.

— Չեմ հասկանում, ինչո՞ւ երբ ես եմ արդուկում, օձիքի վրա ծալքեր են առաջանում:

Ես հաց էի կտրում նախաճաշի համար:

— Բայց մայրիկը շատ ավելի բարակ էր կտրում,— ասաց Ուլֆը:

Ես հառաչեցի:

Հայրս լողասենյակում Ուլֆի պիոներական բլուզն էր լվանում:

— Բայց մայրիկը թանաքի բծերն էլ էր հանում,— ասաց Ուլֆը:

Այս անգամ հայրս հառաչեց:

Մի օր էլ հայրս տուն եկավ մի մեծ ծաղկեփունջ ձեռքին: Ծաղիկները դրեց ճաշասենյակի սեղանին և ուրախ-ուրախ ասաց.

— Վաղը մայրիկը գալիս է:

Եմ այնպես ուրախացա, կարծես վաղը Նոր տարի էր լինելու:

Նույնիսկ Հուտտան հանկարծ քնքշացավ: Սա էլ պետք է, որ մի բան նշանակեր:

Հետևյալ օրը մենք իրար էինք անցել: Ավտոբուսի գալուց դեռ մեկ ժամ առաջ մենք արդեն ավտոկայանում էինք: Եվ հենց որ մոտորի ձայնն էր լսվում, Ուլֆը գոչում էր.

— Մայրիկը եկա՜վ, մայրիկը եկա՜վ:

Եվ վերջապես մայրիկն եկավ: Նա ոչ մի խոսք չասաց, միայն շոյում էր մեր գլուխները: Մենք տեսնում էինք, թե ինչպես է մայրիկն ուրախանում, որ նորից մեզ հետ է:

Երեկոյան մայրիկը ձկան սալաթ պատրաստեց և նրբերշիկ եփեց:

— Սա շատ ավելի համեղ է, քան խաշած կարտոֆիլն առանց ոչնչի,— ասաց Ուլֆը:

Մայրիկը ծիծաղեց, իսկ մենք բոլորս մի քիչ ամաչեցինք: Եվ որովհետև էլ չէինք ուզում խայտառակվել, ամբողջ տարին վարժություններ էինք կատարում՝ կանանց հետևյալ տոնը պատրաստ դիմավորելու համար:

Մենք սովորում էինք եփել, լվանալ ու արդուկել: Մայրիկին օգնում էինք գորգ թափ տալիս ու մաքրելիս: Հուտտան սովորեց օձիք արդուկել այնպես, որ այլևս ոչ մի ծալ չէր ունենում: Մայրիկըն ուրախ ծիծաղում էր: Ես կարծում եմ, որ նա ուղղակի երջանիկ էր:

Նորից եկավ Մարտի 8-ը: Ուլֆը վերին պահարանից իջեցրեց մեծ ճամպրուկը: Հուտտան խմորեղեն թխեց: Հայրիկը խմորագնդեր պատրաստեց թյուրինգյան ձևով: Ես շարունակ խառնում էի սոուսը, որ մեջը կոշտեր չառաջանան:

Մեծ ճամպրուկը տեսնելով, մայրիկն սկսեց ծիծաղել: Հետո բոլորիս հերթով համբուրեց:

— Այս անգամ ես դրամական պարգև եմ ստացել:

— Եվ ի՞նչ պիտի անես,— հարցրինք միաբերան:

— Մենք կճամփորդենք բոլորս միասին:

Ես հենց սկզբից ասացի, որ մեր ընտանիքը, իրոք, երջանիկ ընտանիք է:

*Գերմաներենից թարգմ.*
*ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*





# ԳԱՐՈՒՆ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Գալուստդ բարի՜, իմ անո՜ւշ գարուն,
Արևոտ, բարձրիկ մեր լեռնաշխարհում:
Թող խնդությունից ամպերը լացեն,
Բողբոջներն իրենց աչքերը բացեն,
Դաշտերը օծվեն գոհար ցողերով,
Ջրերը լցվեն ծաղկի բույրերով,
Մեղուները ժիր՝ մեղր պատրաստեն,
Պատանիները ծառեր պատվաստեն:

Թող թափվի նորից քրտինքը արդար,
Ամեն հատիկը որ դառնա հազար՝
Ծառերը մրգի անձրևներ տեղան,
Դաշտերը դառնան լիության սեղան,
Որ մարդ ու թռչուն, մրջյուն ու մեղու
Ապրեն լիառատ մեր հայոց հողում:

*Նկ. ԱՂՎԱՆ ՀՈՎՆԱՆՅԱՆԻ*



«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1973 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց գրող Զորայր Խալափյանին՝ «Պատիժ՝ չսովորած դասերի համար», «Թթենին» և «Հազարատամ գայլը» պատմվածքների համար:



«Նորեկը», «Ցլիկը», «Լեյլան և սուջուխը» պատմվածքների նկարազարդման համար նկարիչ Գրիգոր Թոռոսյանը արժանացավ 1973 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:



# ԼԱԽՏԻ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ապրիլին կանաչում էին կալատեղերը ու տղաները լախտի էին խաղում: Աղջիկները աղջկա խաղեր էին խաղում, մանուկները՝ մանկան, մեծերը ևս իրենց խաղն ունեին:

Ահեկի բարդիներով առատ գյուղակում մեկի տանը փռել էին նախշուն կարպետ, և չորս աղջիկ ծընկածալ նստել, քարկտիկ էին խաղում:

— Շնո՛ւկ, ձեռնո՛ւկ, ճանկո՛,— խաղալով ասում էր աղջիկը:

Մնացածները նայում էին, ու երբ քարը շարժվում էր տեղում, գոչում էին.

— Դնդա՛ց, դնդա՛ց:

— Հապկո՛նք,— ասաց աղջիկն ու նետեց խճաքարը վերև: Խճաքարի հետ հայացքը գնաց ու երդիկում տեսավ մի դեմք. մի քար դրեց կարպետին: Կրկին նետեց մյուսը, և հայացքը գնաց քարի հետ ու երդիկում տեսավ երկու դեմք. երկու քար դրեց աղջիկը: Ապա երեք դեմքեր էին, չորսն էին, հինգ դարձան, բայց հինգ քար ո՞նց դներ. չորս աղջիկ, հինգ տղա: Նա կարպետին չորս քար դրեց, և վերևում հինգից մեկն իրեն ավելորդ զգաց:

— Վահրի՛ճ, Վահրի՛ճ,— կանչեցին աղջիկները, բայց խռովածը չմնաց, գնաց:

Տան պատերին փարվելով բարդիներ էին աճում: Լուսինը սահելով գալիս հասնում էր բարդիներին, և տունը դառնում էր բարդիներով, պարիսպներով, լուսնյակով հնառճ նկար:

Վահրիճը եկավ ու սուլեց: Բայց լսվեց մեկ այլ սուլոց ևս՝ երկու կարճ ու մեկ երկարաձիգ: Եվ Վահրիճը ի՞նչ տեսավ. պարզապես բարդիներով, պարիսպներով ու լուսնյակով նկարին մի աղջիկ ավելացավ: Ներքևից շշուկով, վերևից շշուկով խոսեցին.

— Ծովինա՞ր:

— Կորյո՞ւն:

Ներքևից փսփսացին, վերևից փսփսացին այնքան, մինչև ամպերը եկան ու ծածկեցին լուսնյակն ու ամեն ինչ: Սև էր գիշերը, կայծակն էր շողին տալիս և խավար գիշերով ամպերը դարձյալ սպիտակ էին:

Իսկ առավոտյան երկու կարճ ու մեկ երկարաձիգ կանչին աղջիկը ելավ պատշգամբ, և Վահրիճը տեսավ իր հակառակորդին, որ ձեռքով նշան արեց, գլխով նշան արեց, ու ինքը գնաց: Ավելորդ մարդու մենության զգացումը պատեց Վահրիճին:

Ծովինարը ներս մտավ, ուսին գցեց դաստառակը. վերցրեց կուժն ու դուրս ելավ: Անցավ բակը, անցավ ձորաբերանն ու իջավ կածանով: Մի տեղ Կորյուն տղան չոքել, եղինջ էր քաղում, բռի մեջ տրորում էր աղի հետ՝ մինչև ձեռքերը կանաչ էին ներկվում, ու ուտում էր:

Աղջիկը հասավ ջրին, կուժն ուսից վար բերեց, հենեց լոսված աղբրաքարին, խոնարհվեց կավե խողովակի վրա և համբուրելու նման մոտեցրեց շրթերը, և շրթերը շիթը համբուրելով խմում էին ջուրը:

Կորյունը նայելով մոտ էր գալիս, ժպտալով եկավ, նույնպես խոնարհվեց, համբուրելու նման շրթերը տարավ աղբյուրի կայծկլտուն շիթին...

Արևը քառակուսի լույս էր նետել հատակին, Ծովինարը նստել էր և գույնզգույն թելերից գոտիկ էր գործում: Ծայրն ամրացրել էր ոտքի բթամատին և սկզբում կորացած, ապա հետզհետե ուղղվելով թելը թելին էր հինում:

Դրսից եկավ երկու կարճ ու մեկ երկարաձիգ սուլոց: Նա թողեց գործը և ուրախ ելավ դուրս, նայեց ու տեսավ, որ բարդու տակ կանգնած է Վահրիճը:

— Ի՞նչ ես եկել, ուրիշի ձևով ինձ դուրս կանչում,— ինքն իր մեջ զարմացավ նա:— Ուրիշի ձևով սուտ ուրախացնում ես ինձ:

Կրկին նստեց իր գործին, իսկ բակից ուրիշի ձևով դարձյալ նրան դուրս էին կանչում:

Աղջիկները ընկուզենուց արդեն ճոճկան էին գցել: Ճոճկանը տղերքն էին կապել, ապա թողել ու հեռացել էին իբր, և աղջիկները ճոճվում էին, եկավ նաև Ծովինարը՝ գործած գոտիկը մեջքին: Մեկն արդեն մազերը քամուն տված սլանում էր ճոճկանի վրա, թռչում, հասնում էր վեր, մի պահ անշարժանում երկնքում, կրկին ֆռֆռացնելով շորերը՝ ետ գալիս, քամու ալիքը բախում էր ներքև կանգնածներին, և հակառակ կողմի վրա դարձյալ խոյանում երկինք:

Քամին բացում, մերկացնում էր սրունքները գետնասուր անցնելիս, աղջիկները գոտիկներով խփում էին նրան:

— Սիրած տղա ունես, անունն ի՞նչ է,— խփելով, ասում էին աղջիկները:

Տղաները պահվել էին թաքստոցներում, լուռ լսում էին:

— Սիրած տղայի անո՛ւնն ասա, անո՛ւնը...

Իսկ նա օդում քրքիջ փշրելով, ծամերը՝ քամուն, պրկվում, սլանում էր կրկին ու կրկին, չէր ասում: Ներքևից ծեծում և սիրածի անունն էին հարցնում, քրքջում էր խելագարի նման, գլուխը թափահարում խելագարի նման, չէր ասում: Բայց պինդ էին ծեծում, այլևս ճար չկար, սրունքներին ճայթում էին միանգամից մի քանի գոտիկ, էլ ճար չկար, ճչում էր երկինք մխրճվելով, վերևից.

— Մամիկո՜ն, Մամիկո՜ն... հոգուն մատաղ...

Երկնքից այդ անունը ընկնում էր խոտերի մեջ. թաքստոցում պառկած Մամիկոնը լուռ ծիծաղելով խոնարհում էր գլուխը, դեմքը թաղում կանաչներում:

Այդպես էր աղջիկը խոստովանում: Առաջը կրտրել, խոսք էր ուզել, աղջիկը չէր խոսել: Հիմա խաղալով ասաց:

Արդեն ուրիշն էր ճոճվում, ուրիշն էր ճկում ծնկները, հիմա էլ սրան էին ծեծում, մտրակում գոտիկներով:

— Սիրած տղա ունե՞ս, սիրած տղա ունե՞ս...

— Չէ՛, չունեմ, չունեմ, չէ՛...

Բայց ծեծում են, չեն խնայում, ծեծում են, մինչև ասի:

— Հա՛, հա՛, ունեմ,— ամենաբարձր կետում ճչում է հրճվագին:

— Անո՛ւնն ասա՛, անո՛ւնը...

— Սեյրա՜ն, Սեյրա՜ն, հոգուն մատաղ...

Հե՜յ Սեյրան, գառնարած տղա, դրա համա՞ր էս իջել սարերից, մոշու տակ թաքն ես կացել, իսկ հիմա պառկել ես մեջքի, դաստակդ ճակատիդ ժպտում ես երջանիկ: Եվ պետք չէ, չես ուզում իմանալ, թե ով է հիմա ճոճվում և ում սիրտն է խփում:

Ծովինարն էր ճոճկանին: Կորյունը նայում էր թաքստոցից՝ ատամների տակ չոր խոտ, ժպտում, լսում և սպասում էր: Ծովինարը ճախրում էր երկինք և ընկնում սպանված աղավնու նման, կրկին սլանում երկինք և ընկնում աղավնու նման թևերը փակ: Զույգ ծամերը ծեծում են թիկունքը, քանդվում, դառնում են չորս, քանդվում դառնում են ութ, դառնում քսանութ ծամ մազ, ծածանվում քամուց:

— Անո՛ւնն ասա, անո՛ւնը...

Այդ ժամանակ էր արդեն, լեզվի ծայրին էր Կորյունի անունը, հեռվում հայտնվեց Վահրիճը: Եվ մոտենում էր տխրադեմ, կարծես չգիտեր, որ չի կարելի մոտենալ գարնանը ճոճկան խաղացող աղջիկներին:

— Անո՛ւնն ասա, անո՜ւնը...

Խփում էին աղջիկները գոտիկներով, մինչդեռ նա պապանձվել էր, աստիճանաբար փոքրանում էր աղեղը, իջնում էր, մոտենում էր, մոտենում էր և մոտեցավ այնքան, որ Վահրիճի աջ կողմից ձախ կողմն էր անցնում միայն:

Աղջիկները լուռ կանգնել էին, գիտեին, որ դրա անունը չպիտի տար: Կորյունն էլ ելավ ու եկավ, մռայլ էր ու գունատ: Նա գալիս էր և մոտենալիս մեջքից արձակում էր գոտին: Նրանից քիչ ետ մնացած մոտենում էին ևս չորս հոգի՝ մեջքից արձակելով գոտին:

Լախտահրավեր, մրցման կանչ, մաքառման ցլային պահանջ: Վահրիճը նույնպես արձակեց իր գոտին, ու նրա թիկունքում ուրիշ չորս հոգի արձակեցին իրենց գոտիները: Աղջիկները սսկվել էին, նայում էին հակառակորդ խմբերին, սիրվածներին և մերժվածներին, որ երկու կողմերից գոտիները քարշ տալով գնում էին ընդառաջ:

Տասը տղա հավաքվեցին ի մի, վիճակ էին հանում: Մեկին ընկավ ծիրանի կորիզ, մյուսին՝ դատարկ բուռը:

Հարթ մի տարածության կենտրոնում կանգնել էր մի պատանի, ամուր բռնել իրար կցած զույգ գոտիների մի ծայրը, մյուս ծայրը բռնել էր մեկ ուրիշը, և սա պտտվելով շրջանաձև կանաչ հրապարակում դաշույնի ծայրով գծում էր լախտախաղի շրջանակը:

Մեկը լուրը բերանն առած վազեց կանչելով, և բոլոր ճանապարհներով եկան մեծ ու փոքր, կտուրների վրա կանայք և աղջիկները հավաքվեցին, ծեր մարդիկ նստելու կոճղեր բերեցին, շարվեցին բոլորը շուրջանակի:

Կորյունական հնգյակին դատարկ բուռն էր բաժին ընկել, պաշտպանվողներ էին, գծից ներս պիտի խաղային, իսկ վահրիճականներին ծիրանի կորիզով բուռն էր բաժին ընկել, հարձակվողներ էին: Կորյունականները օձաձև փաթաթել էին իրենց կաշվե գոտիները, դրել էին գետնին, գծից մեկ ոտնաչափ ներս, և արդեն շարվել էին շրջանաձև, յուրաքան-





չյուրն իր լախտի մոտ, ձեռքը կանթած՝ սպասում էին: Եվ վահրիճականները արդեն թռև էին գալիս նրանց շուրջ, դեռևս ծուլլ-ծուլլ, ծանրաշարժ ու ծիծաղաշարժ կապիկություններ էին անում, ու հանկարծ մեկնումեկը սրընթաց խոյանում էր նախահարձակ, ու բախվում էին հաստլիկ բազուկները, ու երբ ձեռքերը կառչում էին միմյանց՝ հակառակորդները լարվում էին ուժով:

Բերեցին ծիրանի փող: Ծիչերով, աղաղակներով, սուլոցներով դիտողները ոգևորում էին խաղացողներին, մարտական ծղրտալ սկսեց ծիրանի փողը, Վահրիճն ու Կորյունը կառչել էին միմյանց, մեկը ցանկանում էր մյուսին գրկելով գծից դեն նետել ու հափշտակել նրա լախտը, իսկ պաշտպանվողը ջանում էր ոտքով փորրել նրա ոտքը, այդպես էր խաղի օրենքը: Քաշքշում էին մոլեգնած, դեմքից քրտինք էր կաթում, մյուսները դառնում էին շրջանաձև ու կատվենի: Ու անակնկալ մի ակնթարթում Վահրիճը հովազային նետումով ընկավ հակառակորդի ոտքերը և հանդուգն ճարպկությամբ հափշտակեց լախտը. մինչ Կորյունը մրրիկի պես դառավ ու նետեց ոտքը, բայց ուշ էր: Կատաղի հուլանի պես գետնին թավալվելով՝ Վահրիճը խույս տվեց և ոտքի ցատկելով, լախտն առած, հաղթական աղաղակով վազեց գծից դուրս:

Ծիրանի փողը ջղեր էր լարում, աղջիկների հիացական հայացքներն իր հետ տանելով՝ հաղթողը հեծում էր շրջանի շուրջ, գլխավերևում պտտելով հափշտակած լախտը: Այնուհետև նա այնպես հաջող տարավ խաղը, որ շուտով երկու լախտ ևս խլեցին, մնաց մեկը, և այդ միակի մոտ կանգնեցին բոլոր կորյունականները՝ ուս-ուսի, սրունք-սրունքի, ձեռք-ձեռքի, ամուր, պարսպի նման:

Ծերունիների երակում արյունը եռ էր գալիս, հուզմունքից ձայնը խզվում էր կոկորդում, անհայտ ակունքներից երիտասարդական ավյունի ինչ-որ ուժեր էին շատրվանում նրանց հոգում:

Չորս լախտ միաժամանակ շամփրում էր պաշտպանվողներին, ձեռք էին մեկնում նրանք լախտ խլելու և արագ ետ քաշում որպես կրակից վառված: Ստիպված վար թողեցին շապկի թևերը: Մայրերը աղաղակում էին, տղամարդիկ ետ էին պահում իրենց կանանց: Նա, որ «Սեյրան, Սեյրան, հոգուն մատաղ» էր գոռացել, դեմքը թաղել էր ընկերուհու մազերի մեջ, չէր ուզում տեսնել ոնց է ծեծվում Սեյրանը, այդպես ծածուկ արցունք էր թափում:

Պաշտպանվողները գերադասեցին դեն նետել վերջին լախտը ևս, ու սկսվեց լախտածեծը: Շրջանից ներս, գայլերից շփոթահար գառների նման միմյանց էին սեղմվել հինգ պաշտպանվողներ, իսկ վահրիճականները բազեի նման դառնում էին նրանց շուրջը, պտտում էին գլխավերևում լախտին ու անակնկալ

հարվածներով պատժում նրանց: Ճչում, աղմուկ-աղաղակում էին խաղացողներն ու դիտողները: Ճայթում, ծլփում էին լախտիները, քաշում-քաշքշում էին իրար, խենթ ցուլերի նման վարում էին հողը ոտով, արյուն էր ցայտում հարվածից ու ներկում շապիկը: Այդ ի՞նչ էր, այդ ի՞նչ էր... Հանդգնության խրախճանք, ճարպկության մրցասպարեզ, սքանչելիորեն վայրագ լախտախաղ էր:

Կորյունի աչքերից կատաղության կայծեր էին ցայտում, զայրույթից ցնցվում էր ողջ մարմնով, իրեն անխնա նետում էր հարվածներին ընդառաջ, հասկացնելով հակառակորդին, որ դերերը փոխվելիս նույնքան անողոք պիտի լինի ինքը: Սակայն Ծովինարն էլ, բոլորն էլ տեսնում էին, որ Վահրիճն է, որ թշնամություն չունի, իր լախտը պտտելով նա ուրիշներին էր հետամուտ, մինչդեռ Կորյունի հոգում մարել էր խաղի բարի ոգին, սևացած սրտով էր խաղում: Վահրիճը նրան խղճում էր նաև դրա համար, և ամենքը տեսնում էին նաև այդ: Պարզ երևաց, որ նա դիտմամբ հապաղեց, դիտմամբ թողեց իր ոտքը, և Կորյունը մի ցատկով իր ոտքը դրեց նրա ոտքին:

Վերջ: Վահրիճը վեր նետեց զույգ ձեռքերը ի նշան, որ այժմ իրենք են դառնում պաշտպանվողներ, և վահրիճականները սկսեցին օձաձև ոլորել գոտիները, որովհետև այդ ձևով պիտի պաշտպանվեին:

Տղաները հևում էին, ձեռքի ափերը գետին էին զարկում, փոշոտում էին և հովացնում: Հինգ կորյունականներ կանգնեցին հինգ վահրիճականների դեմ, և խաղը վերսկսվեց:

Կորյունն ու Վահրիճը միմյանց հետախուզելով, սակավ ինչ հեռավորությամբ օրորվում էին՝ մեջքից քիչ առաջ կռացած, կատվային լարված դանդաղկոտությամբ հետևում իրար շարժումների, տեղաշարժվում, կես քայլ աջ, կես քայլ ձախ, հարված, նորից նույն ճոճումները: Եվ հանկարծ կայծակնային նետումով Կորյունը ծնկի գալով ձգվեց դեպի լախտը, սակայն մյուսը նույնքան արագությամբ կանխեց նրան: Այսպես մեկը մեծ համառությամբ հարձակվում էր, մյուսը մեծ հմտությամբ պաշտպանվում, երբ գծի հակադիր ծայրում կորյունականներից Սեյրանը հեռաթափ եկավ և իր հակառակորդից երկու քայլի վրա ոստնեց օդ և հորիզոնական թռիչքով խոյահարեց ու գծից շատ ներս, համարյա կենտրոն նետեց նրան: Պաշտպանվողը թավալվեց փոշու մեջ, արագ ետ շրջվեց և ափսոսանքով տեսավ, որ հափշտակվեց իր լախտը:

Ծերերը հրճվանքի աղաղակ հանեցին, խրախուսական խոսքեր ասացին ճարպիկ հարձակվողի հասցեին: Հիմա էլ ուրիշ մայրեր էին ճչում ու լալիս:

Կորյունը խաղընկերներից վերցրեց հափշտակած լախտը, վազեց Վահրիճի վրա: Եվ ծանր լախտը սկըսեց շաչել նրա ձեռքում, Վահրիճը հարվածներին



ընդառաջ էր նետում բազուկները, սակայն հարվածներն այնքան անողորմ էին, որ մտրակման ձայնը թույլ ջղեր ունեցողներին ստիպում էր փակել ականջները: Իր լախտը կորցրած պաշտպանը եկավ ու ոտքը Վահրիճի ոտքի մոտ դրեց՝ միասին պաշտպանելու համար: Սակայն Կորյունի հարվածներում այնքան ցավ տվող ուժ կար, որ չդիմացավ և սուտ պատըրվակով փախավ շրջանից ներս: Կրկին Վահրիճը միայնակ մնաց՝ միայն ու միայն իր վրա հարձակվող Կորյունի դեմ:

Շուտով մի լախտ ևս հափշտակվեց, իսկ գծի մեկ այլ մասում երկու ախոյաններ կառչել էին ձեռքերով միմյանց, քաշքշում էին, ապա գլորվեցին գետնին և մաքառում էին գծի սահմանում: Այդ ժամանակ երկրորդ լախտ հափշտակողը մոտ ցատկեց նրանց և ճարպիկ հարվածով գծից դուրս թռցրեց այդ գոտիկը ևս: Այդքանը տեսնելով, Վահրիճը ոտով հակառակորդներին նետեց իր լախտը, որովհետև այլևս պաշտպանվելն անիմաստ էր:

Սկսվեց երկրորդ լախտածեծը: Կորյունը նվազն ընդհատելու նշան արեց, ցանկանում էր, որ հարվածների ձայնն ավելի պարզորոշ լսեն նրանք, որոնք հրճվում էին քիչ առաջ իր ծեծվելը դիտելով: Նա գիտեր, որ աղջիկների մեջ էր Ծովինարը: Ծովինարի, աղջիկների և բոլորի աչքի առաջ նա կամենում էր պատժել ճոճկանի խաղն անպատեհ ընդհատողին, կարծելով՝ այդ են ցանկանում բոլորը, այդպես է պահանջում արդարությունը:

Եվ լախտը գլխավերևում պտտելով և մոլեգնորեն հարվածներ տեղալով՝ նա գնաց, սլացավ, իսկական ասպատակ սփռելով շուրջը: Շուտով Վահրիճի ճերմակ վերնաշապիկը սկսեց շերտ-շերտ կարմիր ներկվել, ամեն հարվածից դիտողները ցնցվում էին, խաղը միայն պատրվակ էր, ո՞վ չէր տեսնում: Գեղեցկություն չկար, չկար շիտակություն, վեհանձնություն, խաղը խաղ չէր:

Ծովինարը ջոկվեց ընկերուհիների խմբից, մոտեցավ հորը, որ նստել էր տղամարդկանց շարքում, կոճղի վրա, ցնցեց հոր ուսն ու խոնարհվեց նրա ականջին, ինչ-որ բան ասաց:

Հայրը ոտքի ելավ, քիչ առաջ գնաց, բարձրացրեց ձեռքը.

— Կացե՛ք,— ասաց նա,— գոտկատեղից վերև խփել չկա, այս ի՞նչ եք անում։

— Դա խաղ չէ՛, դա ծե՛ծ է,— խոսեցին մի քանիսը ևս։

Նույն պահին բոլորը ականատես եղան, ինչպես Վահրիճը ճանկեց Կորյունի լախտը։ Ու հոգնած, ծեծված, նա անխռով քաշում էր ախոյանին գծից ներս։ Իսկ նա գունատվել էր, ատելությամբ ու վախով աչքը հառել էր նրա աչքին, հիմա տեսավ, որ Վահրիճի շրթունքից արյուն է կաթում, ապօրինի հարվածների հետքեր էին ողջ մարմնի վրա։ Սարսափելի է, եթե նա իր ձեռքից պոկի լախտը և ինքն անզեն մնա հակառակորդի լախտու դեմ։ Իսկ եթե չպոկի, ապա գծից ներս տանելով կտրորի ոտքը և այն ժամանակ խաղը պետք կլինի սկսել նորից, այն ժամանակ դժվար է ասել, թե ինչպես է հարվածելու Վահրիճը։ Սակայն նա այլևս անկարող էր դիմադրել, հակառակորդը համառորեն ներս էր քաշում իրեն։ Ճարահատյալ թողեց, սլացավ, վերցրեց ընկերներից մեկի լախտը և վերադառնալով՝ երկու ախոյան կանգնեցին դեմ-դիմաց, երկուսի ձեռքին էլ ծանր լախտ։

Եվ մինչ մնացյալները ճչալով սլանում, դառնում էին շրջանից դուրս և ներս, մինչ այս ու այնտեղ ճայթում էին լախտերը, թավալգլոր էին լինում ու կրկին ոտքի ցատկում վահրիճականները, այստեղ երկու ախոյան հավասար զենքով խոյանում էին միմյանց վրա, լախտերով շանթում, ծաղկում, ապա կրկին նահանջում։

Դիտողները հրում էին իրար, եկել հասել էին շրջանին, այլևս խանգարում էին խաղացողներին, գոռում-գոչյունը ականջ էր խլացնում։ Երբեմն Վահրիճը թողնում էր նահանջող հակառակորդին և սլանում ընկերներին պաշտպանության, և այդ ժամանակ կորյունականները վաղվաղակի ցրվում էին նրա առջևից, ինչպես ճնճղուկները, երբ գետնին նկատում են մոտեցող բազեի ստվերը։

Խաղն արյունալի էր դառել, մեծերն ելան, դադարեցրին, հանդարտեցրին տղաներին, նրանց գրկած մոտեցրին իրար՝ հաշտեցնելու։

Պղնձե սինու վրա մոտակա տան հարսը բերեց տաք բաղարջը՝ տասը մասի բաժանած. Վահրիճը կորյունականներին թխվածք բաժանեց, Կորյունը՝ վահրիճականներին։ Ապա գավաթի վրա թեքվեց կուժըն ու կալծկլտալով ջուր ցայտեց, լցվեց, թափվեց գավաթից Ծովինարի ձեռքերին, և նա առաջինը գավաթը մեկնեց Վահրիճին։ Զարմացած նայեց Վահրիճը, աչքերին չհավատալով։ Ծովինարը ժպտա՛ց՝ երազը դարձնելով իրականություն, նրա ձայնն ասաց. «Վերցրու»։ Նրանց շուրջը խռնված խոսում, աղմըկում, ծիծաղում էին, աղջիկները ջուր էին բաժանում ծարավներին։ Ծովինարի ձեռքը դեռ մեկնված էր, Վահրիճը չէր համդգնում վերցնել, և Կորյունը



խփեց, աղջկա ձեռքից ցած նետեց գավաթը, ապա գետնից վերցնելով փոշոտ ու ցեխոտ գոտիկը՝ սպանված օձի պես ետևից քաշ տալով հեռացավ։

Ջրվեժը։ Մոշու թփերի մեջ Վահրիճը հանեց քրտինքից թրջված ու սև, արյունոտ շապիկը, մերկացավ, թփերի միջով գնաց դեպի ջրվեժը, մտավ ջրի տակ։

Աղբյուրի տակ ցայտում էր ջուրը վաղուց լցված կժի վրա։

— Այդ էլ կհիշեմ,— ինքն իրեն ասաց Ծովինարը։ Հաղթողի գեղեցկությունը՝ ոգով և մարմնով հաղթողի գեղեցկությունն է։

Կժերը, կուլաները, դաստառակները աղբրի շըրթին թողած՝ աղջիկները նստոտել էին շրջանաձև, գլխներին ծաղկեպսակներ դրած, թել էին խաղում։ Բոլոր տասը մատների վրա մեկը թելով կառուցվածք



էր ստեղծել՝ «մահճակալ», նրա կողքի աղջիկը իր տասը մատներով վերցրեց կառուցվածքը, և «մահճակալը» նրա մատների վրա դարձավ «քյամանչա»: Նրա կողքինն էլ վերցրեց «քյամանչան», դարձավ «մկրատ»: Ծովինարը վերցրեց «մկրատը», և նրա մատների վրա կառուցվեց «գելի բերան»: Ամենադժվարը «գելի բերանն» էր, նրա կողքի աղջիկը չգիտեր ինչպես վերցնել:

— Չվերցնես՝ քեզ կուլ կտա,— ասաց Ծովինարը ընկերուհուն:

Սարսափելի բաց էր մնացել գելի բերանը:

Մոտիկից անցնում էր Վահրիճը, տեսավ աղջիկը չի վերցնում, ինքը մոտ եկավ, ծնկի իջավ Ծովինարի առաջ և նրա մեկնած ձեռքերից վերցրեց կառուցվածքը, «գելի բերանը» նրա մատներին դարձավ «քյամանչա»:

Ծովինարը ակամա տարավ ձեռքը, քաշեց թելի մի ծայրից, մյուսը տղան բռնեց ատամներով, երբ քաշեցին՝ դանդաղ և մելամաղձիկ ծայր առավ քյամանչայի նվագը: Ծովինարը շարժում էր ձեռքը, կնտնտոցը գնում գալիս էր լարերի վրայով, աղջիկները դյութված մնացել, նայում էին: Սիրտն էր նվագում, ձայն չկար, բայց նրանց աչքերում նվագ էր, երգն էր նրանց շարժումը, նրանց լռությունը:

Գոռում-գոչյուններով սարալանջից պատանիներ էին իջնում, տասը-տասնհինգ հոգի տղաներ: Առաջինը կռանում էր, երկրորդը ձեռքերը նրա մեջքին հենելով՝ թռչում էր նրա վրայով, երկու քայլի վրա ինքը ևս կռանում: Երրորդը թռչում էր երկուսի վրայով էլ և կռանում երկրորդից քիչ հեռու: Երբ բոլորը թռչում էին, առաջինը ուղղվում էր, թռչում բոլորի վրայով և վերջին կռացածից երկու քայլի վրա կրկին կռանում:

Այսպես խաղալով, ճչալով և սուլոցներով պատանիները իջնում էին, երբ նկատեցին զույգին. Ծովինարն ու Վահրիճը ծունկի էին եկել խոտերի մեջ միմյանց դեմ, քաշում էին թելի ծայրը և «քյամանչան» նվագում էր նրանց մատների վրա: Աղջիկները շուրջանակի նստոտել էին, նայում էին ու լսում, իսկ նրանք հմայվածների նման օրորվում էին՝ նայելով միմյանց աչքերի մեջ:

Կորյունը մի ոստյունով մոտ ցատկեց: Հանել էր դաշույնն ու կանգնել: Սիրահարների նվագը ուժաթափ էր անում նրան, բայց դաշույնն այլևս մերկացած էր, շողաց ու իջավ: Զնգաց «քյամանչայի» կտրած լարը ու ամեն ինչ լռեց:

Աղջիկները վեր թռան, հանկարծ հիշելով, որ կժերի ջուրը վաղուց տաքացել է, հանեցին ծաղկեպսակները, նետեցին գետի մեջ և կժերն առած՝ քիչ անց երևացին ձորի պռնկին, իրար ետևից շարեշար, կռունկների նման երամ կապած, օրոր-շորոր, մեջքները բարակ խանչալի բուռ:

Իսկ ձորում տղաները. դաշույնախաղ էին սկսել, թափով նետելով ցցում էին հողի մեջ, և ով հարվածով կողի պառկեցներ հակառակորդի դաշույնը՝ այլևս իրենն էր:

Գիշեր:

Աննգույշ շարժումից զնգաց ու լռեց տան կարասիներից պղնձե ինչ-որ իր: Աղջիկը բացեց աչքերը ու կրկին գոցեց: Բայց արդեն նկատել էր վարագույրի ետևից իրեն ակնապիշ նայող մարդուն, վախի խեղդված ճիչը դուրս թռավ կոկորդից:

— Հը՞,— հայրը մռնչալով շուռ եկավ անկողնում, հարցրեց,— ի՞նչ էր:

Ծովինարը նստել էր անկողնում, ծածկոցը կրծքին հավաքած, զարմանալով նայում էր Վահրիճին:

— Տանը գող կա, մա՛րդ,— ասաց մայրը:

— Չէ՛, չէ՛, ե՛ս էի,— ասաց Ծովինարը:

— Հրե՜ն կանգնած: Ո՞վ ես,— հարցրեց մայրը:

— Մա՛րդ, տես ո՞վ է այն կանգնածը:

Պահարանից ընկան, ծլնգացին ու զնգացին ինչ-որ իրեր: Ամեն ինչ զնգում ու ձայներ էր հանում, պատին արծաթե փայլ էր արձակում զենքը, լուսամուտի փեղկերը չքացան խավարի մեջ, Վահրիճը զգաց, որ մոլորվել է վարագույրի մեջ, և տան տղամարդը նրան իր գիրկն առավ:

— Լույսը վառի՛ր,— ասաց նա կնոջը:



Ծովինարը պապանձվել, նստել էր անկողնում, հայրը կամացուկ ետ տարավ վարագույրը. լախտախաղին այնքան բոլորին դուր եկած տղան էր:

— Գո՛ղ են բռնել,— գոռգոռում էին գյուղի երեխաները, և ամեն կողմից մարդիկ էին հավաքվում հրապարակ:

Եկան տեսան սյունից կապած պատանուն, զարմանքից հառաչեցին:

Մեծերն իրար գլխի հավաքվեցին, դատ արին: Վճիռ կայացրին ու որոշվեց դատաստան անել: Բերին այծի մազոտ մորթի, դանակով կտրեցին, սարքեցին բեղեր, հսկա բեղեր: Ամրացրին «դահիճի» քթի տակ և կես կատակ, կես լուրջ՝ սկսվեց դատաստանը՝ մեծերի խաղը:

Բեղերով հսկան հանեց գոտին, մոտեցավ սյունից կապած պատանուն:

— Քսանհինգ զարկ,— հայտարարվեց ավագների խորհրդի որոշումը:

Գոտին գալարվեց օդում և շառաչեց առաջին հարվածը:

— Մե՛կ,— միաբերան ասացին բոլորը:

Տղան ցնցվեց ու կրկին մնաց անշարժ: Արև էր, լույս էր, ամոթ էր, նրան միայն դա էր տանջում:

— Երկու՛,— միաբերան հաշվեց ամբոխը:— Երե՛ք, չո՛րս, հի՛նգ...

Բեղավորը գոտին վարժ էր շարժում, աղաղակները վերագրում էր իր շնորհքին և մոռացել էր, որ կարող էր և ուժեղ չխփել:

Բազմության միջից մեկը դուրս վազեց, եկավ ու կանգնեց Վահրիճի դեմ, մարմնով ծածկելով նրան: Ընկերն էր: Խաղը թույլատրում էր այդպիսի միջամտություն:

— Տա՛սը,— իր ձայնը մյուսներին խառնելով, կանչեց բեղավորը՝ հարվածելով ընկերոջը պաշտպանող պատանու թիկունքին: — Տասնմե՛կ...

Սա հազիվ երեք հարված միայն տարավ, տասներեքից կրկին գոտին Վահրիճի թիկունքին էր շաչում:

— Տասնչո՛րս, տասնհի՛նգ...

Երկրորդ պատանին դուրս եկավ շարքերից, եկավ ու մարմնով ծածկեց ընկերոջը: Չորս հարվածն էլ սա տարավ, երրորդը երկուսը միայն կարողացավ ընդունել, Վահրիճի բոլոր ընկերները հերթով եկան ու իրենց մարմնով փրկեցին նրան մի քանի հարվածներից:

Մարդկանց միջից դուրս եկավ Կորյունը: Ամբոխը խրախուսանքի և հավանության աղաղակ արձակեց:

— Տասնու՛թ, տասնի՛նը...

Հաջորդն արդեն Կորյունի կռնակին էր իջնում:

— Դու գողության չես գնացել,— հարվածները ընդունելով, շշնջաց նա Վահրիճին: — Ասա՛, որ ուրիշ բանի էիր գնացել:

Վահրիճը գլուխը բացասաբար շարժեց:

— Քսանմե՛կ...

— Մեղք ես դու,— ցավից կնճռելով, շարունակեց շշնջալ Կորյունը:— Ծովինարի համար էիր մտել.... Ես էլ չեմ դիմանում, ասա՛, մե՛ղք ես...

— Քսաներկո՛ւ...

Այդ ժամանակ «դահիճի» բեղերր պոկվեցին և ամբոխը հռհռաց:

— Հերի՛ք է, հերի՛ք է,— այլևս գոռում էին ժողովրդի միջից:

Միայն ժողովրդի մեջ կանգնած Ծովինարը գիտեր ինչ են խոսում իրեն սիրող երկու տղա, հաս-

կանում էր, որ գլուխը բացասաբար շարժելով, Վահրիճը իր՝ Ծովինարի պատիվն ու անունն է փրկում ամբոխի կարծիքից:

Մի քանի հարված ընդունելուց հետո, Կորյունը հեռու քաշվեց:

— Ձեր գոմեշի՞ն ես ծեծում,— ատամների արանքից նետեց նա բեղավորին:

— Հերի՛ք է, հերի՛ք է, ջահել է, էլ չի՛ անի:

— Քսանհի՛նգ,— վերջին անգամ հաշվեց հրսկան ու հոգնած ձեռքը բարձրացրեց, սրբեց ճակատի քրտինքը:

Դատավորն էլ պոկեց իր դնովի մորուքը, նշան արեց, որ տղայի կապերն արձակեն:

Երբ արձակեցին, տղան սյունը գրկած անուժ սահեց ցած, ընկավ գետնին: Բոլոր ձայները կտրվեցին, ամբոխը հառաչեց, լռջացավ: Տղան դանդաղ ոտքի ելավ, օրորվելով հեռացավ մարդկանցից, առանց դեմքերին նայելու, ցանկապատերի ցցերից բռնելով՝ նա դուրս եկավ գյուղից, ելավ դաշտ:

Նա գիտեր՝ որտեղ է այդ ժամին իր ձին արածում: Այդ ժամին նա պիտի արձակեր բխովը, կախեր ձիու վզից, պիտի ցատկեր մեջքին, ծանծաղուտ գետով պիտի քշեր, նժույգը պիտի քառարշավեր, օդ պիտի հաներ այնքան կայթիլ, որ ձիու կրծքի տակ արևի լույսը ծիածան կազմած, այլև ծիածանի մեջ պիտի սլանային մինչև ջրվեժ և նույն ծիածանն առած՝ ետ պիտի գային:

Իսկ հիմա նա մոտեցավ ձիուն, բռնեց բաշից, ցանկացավ հեծնել, ջախջախված մարմինը չէր ենթարկվում: Ընկավ գետնին, գլուխը սմբակներին մնաց: Ձին զգում էր երևի, տագնապած ֆռռացնում էր ու չէր շարժվում: Տիրոջ արցունքներն էին հոսում սմբակների վրա:

Գիշերն իջավ: Հանդը լցվել էր վառած ջահերով, անունով կանչում էին նրան, Վահրիճին էին փընտրում: Իսկ նա լսում էր ու չէր պատասխանում:

Ջահերը ցիրուցան թափառում էին խավարում, եղավ, որ անցան շատ մոտիկից, ապա մարելով հեռացան, մնաց գիշերային լռությունն ու խոնավ գետինը:

Ցերեկով իր ձիու հետ նա հասավ գետին, փորի պառկած՝ դեմքը ընկղմեց ջրի մեջ և համարյա թառամած մի ծաղկեպսակ հոսանքով եկավ ու կպավ նրան:

Հաջորդ գիշերը նույնպես սար ու ձոր ընկած նրան էին փնտրում, ամենուր շարժվող լույսեր էին, ողջ Ահեկի գյուղն էր եկել: Իսկ նա մտել էր ժայռախոռոչն ու չէր պատասխանում, ճպուռները ձայն էին ածում, և սկսեց բացվել լույսը:

Հեռու սարահարթի պռնկին լուսացրել էր մի աղջիկ և հիմա իր կարմիր զգեստով թվում էր գիշերը մի ծաղիկ է բուսել:

Կեսօրին տեսան հանդի ճանապարհով գյուղ են մտնում երկու հոգի՝ մի տղա, մի աղջիկ: Նրանք անցան փողոցներով, լուռ գնացին ցանկապատերի երկայնքով: Կտուրներին կանգնած, աղբյուրներից, ամեն կողմից նրանց էին նայում:

Նրանք արդեն անցան բոլորի բակերով, հասան Ծովինար աղջկա հորանց բակը, գլխահակ կանգնեցին: Աղջկա հայրն ու մայրը պատշգամբ էին ելել, լուռ կանգնած սպասում էին:

Վահրիճն ու Ծովինարը գնացին և գլխահակ կանգնեցին նրանց առջև:



# ՃՆՃՂՈՒԿԸ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

Ճնճղուկին ես հեռու անտառում տեսա.
Ինչ-որ մեկը խփել էր նրա թևերին,
Ու փետուրներից կաթկթում էր արյունը:

Ես նրան վերցրեցի իմ հայացքի մեջ,
Բարությամբ փաթաթեցի վերքերը
Եվ զգուշությամբ իմ սենյակը բերեցի:
Ես փափուկ բառերից բույն հյուսեցի
նրա համար,
Բույնը տեղավորեցի իմ հնարած ծառի սաղարթի
մեջ՝
Ամենաբարձր ճյուղերի վրա:

Երբ լավացան ճնճղուկի թևերը,
Ես նրա համար երկինք հնարեցի,
Ամպեր ու տերևներ հնարեցի
Եվ ամենալավ բառերից շինված հատիկներ:

Հիմա ամեն ինչ լավ կլինի,— մտածեցի ես,—
Հիմա նա ազատ կլինի ու անհոգ:
Սակայն սա ի՞նչ է, սպասեցեք,
Պարսատիկով չարաճճին որտեղի՞ց հայտնվեց
Ծառի տակ, ա՞յս ինչու հնարեցի:

# ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԳՏԱԾ ԱՇԽԱՐՀԸ



Չնայած մեր զրույցի ժամանակ նա մի քանի անգամ կրկնեց, որ արդեն յոթանասունհինգ տարեկան է, տասնհինգ թոռների և երեք ծոռների տեր, երբ բաժանվեցինք, ես այն տպավորության էի, որ հանդիպել եմ մի երիտասարդ, շատ երիտասարդ կնոջ, որը աշխարհին նայում է մանկան պարզությամբ, անմիջականությամբ ու բարությամբ, և երբեմն նույնիսկ՝ մանկան չարաճճիությամբ... Այո, իսկապես, խոսելիս, երբ Պոլսո Եսայան դպրոցում իր սովորելու տարիներից մի զվարճալի դեպք էր պատմում, աչքերում հայտնվում էր չարաճճի մի երանգ...

Հարցրեցի, թե ինչպես պատահեց, որ վաթսունհինգ տարեկան հասակում սկսեց նկարել:

— Զավակներս ամուսնացան, իրենց համար առանձին տուն-տեղ կազմեցին, մնացինք ես ու ամուսինս, որը գիտնական էր և ամբողջ ժամանակ գրելով ու կարդալով կզբաղվեր: Կձանձրանայի, կգանգատեի մենակութենե:

— Վրձին ու ներկ վերցուր և սկսե նկարել,— ըսավ ամուսինըս,— այդքան աղվոր ձեռագործներ կընես, չի կրնար ըլլալ, որ նկարել ձեռքեդ չգա:

Եվ ինծի համար ներկ ու վրձիններ գնեց:

Առաջին փործերս անհաջող էին, լացս կուգար հուսահատութենես, հետո քիչ-քիչ գույները կրցա ենթարկել իմ տրամադրությանս: Բայց զգացի, որ այդքանը չի բավեր և նկարչական դպրոց գացի: Տարիքիս նայեցան, չուզեցին ընդունիլ զիս:

«Տարիքս կարևոր չէ,— ըսի,— ես հայ եմ, մեր ժողովուրդը մեծ ողբերգություն ապրեցավ, իմ և ինձ նման շատերու երիտասարդությունը քարուքանդ եղավ, ապահով երդիկ մը, հանապազօրյա հաց գտնելու ետևեն ինկանք, առիթ չեղավ, ժամանակ չեղավ, որ մեր կոչումով, մեր ընդունակություններով զբաղինք: Հիմա կուզեմ կորսնցուցածս վերագտնել: Գործերուս նայեցեք՝ եթե կը կարծեք, որ նկարել կրնամ, թույլ տվեք գիտելիքներ ձեռք բերել»:

Մեկ խոսքով, հաջողեցա, ընդունվեցա: Ուսուցչուհիս ճանաչված նկարչուհի մըն էր: Շատ կհավներ գործերս: Երբ դպրոցն ավարտեցի, ուր որ ինքը ցուցահանդես կունենար, իմ գործերս ալ կտաներ հետը: Այսպես, կամաց-կամաց ճանապարհ հարթեցինք:

Տիկին Նունուֆարը անհատական 38 ցուցահանդեսներ է ունեցել Եվրոպայում և Ամերիկայի Միացյալ Նահանգներում, բայց նրա մեծագույն երազանքն էր Երևանում կազմակերպել իր ցուցահանդեսը և ներկայացված գործերը նվեր թողնել հայրենի պատկերասրահին:

Եվ ահա, Երևանի մանկական պատկերասրահում բացվեց Նունուֆար Պողոսյանի անհատական ցուցահանդեսը, որտեղ ներկայացված էին նրա տասը գործերը:

Երևի պատահականություն չէր, որ նրա գործերը հենց այս պատկերասրահում ներկայացվեցին, որովհետև ինչպես իրեն՝ Նունուֆարին, այնպես էլ իր գործերին հատուկ են մանկական անմիջականությունը, պարզությունը, վճիտությունն ու բարությունը:

Ահա մի նկար. «Կյանքս Պոլսո մանկապարտեզին մեջ»:

Կենտրոնում մանկապարտեզն է, որտեղ խաղում են երեխաները: Մի կողմում աղմկոտ շուկան է, որտեղ զամբյուղներով բեռնավորված ելումուտ են անում վաճառողներն ու գնորդները, մյուս կողմում կամարակապ մի փողոց կա, որտեղով ոչխարներ են անցնում:

— Այստեղ ամեն առտու ոչխարներ կմորթեին: Քստմնելի տեսարան էր: Ամբողջ կյանքիս մեջ չկրցա մոռանալ այդ տեսարանը:

Չի մոռացել նաև իր մեծ մորը՝ տատին և մանուկ օրերին նրանից լսած հեքիաթները: «Մեծ մայրիկիս հետ» գունագեղ կտավում, նկարված է մեծ մայրը՝ համրիչը ձեռքին: Գրկում մանուկ Նունուֆարն է, որն ուշադիր լսում է տատիկի հեքիաթները:

Եվ այսպես, այս կտավներում, և նաև այն բազմաթիվ կտավներում, որոնք ցրվել են աշխարհի մի շարք թանգարաններում և նկարների անհատական հավաքածուներ ունեցողների մոտ, Նունուֆարը ջանացել է արվեստի ճամփով վերագտնել իր կորցրած մանկությունը:

ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆ



*Մեր երկրի անհետացած կենդանիները*

# ՎԱՅՐԻ ՋԻՈՒ ՆԱԽՆԻՔ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

ՀԻՊԱՐԻՈՆ է կոչվում այն կենդանին, որ պատկանում է ձիերի ընտանիքին, սակայն երկրի երեսին ապրել է ժամանակակից ձիերից շատ առաջ, երրորդական երկրաբանական շրջանի վերջերքին: Այդպիսի մի կենդանու մնացորդներ գտնվել են Արզնուց վերև, Նուռնուս գյուղի մոտ: Թե որքան վաղ ժամանակներում է ապրել այդ կենդանին, երևում է նրանից, որ նրա ոսկորները գտնվել են դիատոմիտի 7-մետրանոց շերտի տակ: Այդ շերտն էլ իր հերթին ծածկված էր մոտակա լեռներից իջած ու քարացած լավայով:

Հիմա եկեք որոշենք, թե ե՛րբ է այդ կենդանուց եղել մեր երկրում:

Դիատոմիտը առաջանում է միաբջիջ ջրիմուռներից, ավելի շուտ՝ նրանց ամուր պատյաններից, որոնք ժամանակի ընթացքում լճի հատակին իրար վրա դարսվելով և ջրի ծանրությունից ճմլվելով՝ ճերմակ կամ դեղնավուն կավճի նման շերտեր են կազմում: Ուրեմն, մի ժամանակ, երբ չկար Հրազդան գետը, Արզնու շրջակայքում լիճ է եղել, որի մեջ բազմանում էին դիատոմիտային ջրիմուռներ: Թե որքան երկար է տևել այդ լճի կյանքը, երևում է նրանից, որ լճի հատակին նստած ջրիմուռների նրստվածքներից ննտագայում ճմլված ու քարացած 7-մետրանոց շերտ է առաջացել: Իսկ հիպարիոնները այդ վայրերում արածում էին այդ լճի գոյանալուց էլ առաջ...



Ի՞նչ կենդանիներ էին դրանք: Ոսկորներից երևում է, որ ձիու, փոքր ձիու, էշի մեծության կենդանիներ էին, բայց եռասմբակ էին: Ապրում էին մինչև մի քանի հազար գլխի հասնող երամակներով, խոնավ ու խոտառատ հարթություններում, որպիսին մի ժամանակ եղել է ներկա Արզնու շրջակայքը:

Գիտությունն ասում է, որ այդ կենդանիները վերին պլիոցեն* կոչվող ժամանակաշրջանում հանդես են եկել Հյուսիսային Ամերիկայում և այնտեղից տարածվել են աշխարհով մեկ՝ բացի Հարավային Ամերիկայից և Ավստրալիայից:

Այդ կենդանիները անհետացան և սերունդ չթողեցին: Նրանց փոխարինեցին դարձյալ Ամերիկայից տարածված միասմբակ ձիերը, որոնք հարմարված էին նոր առաջացած չոր տափաստանների պայմաններին:

*) Պլիոցենը մեր երկրի՝ չորրորդական դարաշրջանին նախորդող մի շրջան էր, որ տևել է շուրջ 6 միլիոն տարի:

---

*Նոր գիրք ձեզ համար*

# «ՀԱՐԿԱՎՈՐ Է ՀԻՇԵԼ»

Հաճախ մայրիկը, ուսուցչուհին զգուշացնում են.

— Ներս մտնելիս գլխարկդ հանի՛ր:

— Ի՞նչ ավելորդ բան,—դժգոհում են շատերը:— Ո՞վ է հնարել դա:

— Դա հարգանքի նշան՝ է տանտիրոջ նկատմամբ,— բացատրում են ձեզ:

Իսկ թե ո՞վ է հնարել և ի՞նչ նպատակով, դա իսկապես հետաքրքիր է:

Սրանից յոթ-ութ հարյուրամյակ առաջ բավական վտանգավոր բան էր մենակ ճանապարհ գնալը, թեկուզ մի գյուղից հարևան գյուղը հասնելը: Ճանապարհներին վխտում էին որս հետամտող անտուն թափառաշրջիկներ, հազար ու մի տեսակ ավազակներ: Ամենաթեթև, փոքր վեճից անգամ կարող էր կռիվ ծագել, և մարդը դաշույնի մահացու հարված ստանար: Դրա համար էլ ասպետը հագնում էր ծանր զրահ, երկաթից հյուսված ամուր օղազրահ, երկաթե կոշիկներ, երկաթե ձեռնոցներ և երկաթե դիմակալով սաղավարտ:

Այդպիսի զրահների նմուշներ հիմա դուք կարող եք տեսնել Մոսկվայի Զինապալատում և Լենինգրադի Էրմիտաժում: Դրանք բերվել են Գերմանիայից կամ Ֆրանսիայից:

Այդպիսի համազգեստով ասպետը իր թափառումների ժամանակ եթե հասնում էր մի բարի մարդու տուն և ուզում էր այցելել նրան, ապա դռնը շեմքից ներս դնելիս հանում էր սաղավարտը և ձեռքին բռնած ներս մտնում: Դրանով նա ուզում էր ասել տանտիրոջը. «Ես քեզ վստահում եմ, տեսնո՞ւմ ես, գլուխս բաց եմ մտնում քո տուն, դու լավ մարդ ես, ո՛չ թալանչի ես, ո՛չ մարդասպան, թիկունքից չես հարվածի»:

Ինչպես ասացինք, դա յոթ-ութ հարյուրամյակ սրանից առաջ էր: Փոխվել են ժամանակները, փոխ-

վել են մարդիկ, փոխվել են մարդկանց փոխհարաբերությունները, բայց մնացել է գեղեցիկ սովորությունը:

Գլխարկդ հանելով, դու հարգանք ես մատուցում տանտիրոջը, տանը գտնվողներին:

Երբ ցանկանում ես փողոցում կամ մի այլ տեղ որևէ հարցով դիմել անծանոթ մեկին, նախ մտահոգվում ես՝ ինչպե՞ս կվերաբերվի քեզ, քաղաքավարությա՞մբ կպատասխանի, թե՞ չորությամբ կամ կոպտորեն կհրաժարվի պատասխանել, կամ գուցե ուշադրության իսկ չարժանացնի: Դիմելուց առաջ տատանվում ես, ընտրություն կատարում անցորդների մեջ, որի՞ արտաքինն է հավատ ներշնչում, ո՞րը սիրալիր կպատասխանի: Ու այս հանգամանքին շատ ավելի ես կարևորություն տալիս, քան այն էական կողմին, թե ով ավելի ստույգ կպատասխանի: Համենայն դեպս, առաջին հերթին վերաբերմունքն ես հաշվի առնում, որովհետև դրա առկայության դեպքում երկրորդը՝ ստույգ պատասխանը, հեշտ է պարզել: Եթե կոպտորեն են պատասխանում կամ ուշադրության չեն արժանացնում հարցդ, երկար ժամանակ զգում ես վիրավորանքի դառնությունը, թեև




վիրավորողը մի պատահական անցորդ է եղել և հազիվ թե առիթ լինի կյանքում երկրորդ անգամ նրան հանդիպելու: Ահա այս բանը խորապես զգացող մարդը երբեք իրավունք չունի անուշադիր, անտարբեր, էլ չեմ ասում՝ կոպիտ ու անտակտ վերաբերմունք ցուցաբերել շրջապատի նկատմամբ:

Ամեն դեպքում պետք է հաշվի առնել շրջապատը՝ և՛ վերաբերմունքի, և՛ հագնվելու, և՛ խոսելու, և՛ վարվելակերպի, և՛ շատ ու շատ այլ հարցերում:

Եթե գտնվում ես սարում, կարող ես բարձր, նույնիսկ գոռալով խոսել, որպեսզի քեզ լսի քեզնից բավական հեռու գտնվող ընկերդ, դրանով դու ոչ ոքի չես խանգարում: Իսկ եթե նույնքան բարձր խոսես փողոցում, տրամվայում, դպրոցում, ապա հազիվ թե քեզ նորմալ մարդ համարեն: Եթե դու դպրոց կամ խաղահրապարակ մտնես թանկարժեք փայլփլուն զգեստով, երբեք գեղեցիկ տեսք չես ունենա, նույնիսկ ծիծաղելի կթվաս, որքան էլ որ լավ կարված լինի զգեստդ, մինչդեռ նույն այդ զգեստով բավական բարետես կերևաս, եթե լինես երեկոյան համերգասրահում կամ օպերայում: Ամեն ինչ իր տեղն ունի,— ասում է ժողովուրդը:

Ալեքսեյ Դորոխովը իր «Հարկավոր է հիշել» գրքում պատմում է վարվեցողության հազար ու մի մեծ ու երբեմն շատ ավելի կարևոր փոքր հարցերի մասին: Կարդացե՛ք այդ գիրքը, դա ձեզ իսկապես կօգնի վարվել այնպես, որ կյանքը ավելի լավ ու հաճելի լինի և՛ ձեզ համար, և՛ ուրիշների:

*ԱՄԱԼՅԱ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

# ԲՈՒՍԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ «ՀԱՍՏԼԻԿՆԵՐԸ»

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

*Ինչպես մարդկանց, այնպես էլ ծառերի մեջ լինում են հսկաներ ու թզուկներ, արտակարգ բարձրահասակ ու գեր, նաև կարճահասակ ու նիհար, ծառեր:*

*1794 թվականին Սենեգալում աշխատող բուսաբան Մայքլ Ադանսոնը հայտնաբերեց մի զարմանալի ծառ, որի բնի տրամագիծը հասնում էր 9 մետրի, մինչդեռ նրա բարձրությունը չէր անցնում... 12 մետրից: Սակայն բուսաբանի զարմանքը իր գագաթնակետին հասավ, երբ որոշեց ծառի տարիքը, որը կազմում էր 5150 տարի: Հռչակավոր հանրագիտակ Ալեքսանդր ֆոն Հումբոլտը այդ ծառը անվանեց «մեր մոլորակի հնագույն օրգանական հուշարձանը»: Սա երկրագնդի հաստլիկ ծառերից ամենանշանավորն էր: Չնայած տեղացիները դրան բաոբաբ էին անվանում, այնուամենայնիվ բուսաբանները հարմար գտան կոչելու «ադանսոնիա», ի պատիվ իր հայտնաբերողի:*


Բաոբաբ

*Թեև բաոբաբի որոշ ծառերի բնի շրջագիծը անցնում է 30 մետրից, սակայն մոտիկ տարածությունից արձակած հրացանի գնդակը ծակում-անցնում է բնի հսկայական մասսան, քանի որ նրա հյուսվածքները արտակարգ փափուկ և սպունգանման են: Երբ բաոբաբի փայտանյութը վարակվում է սնկային հիվանդություններով, կարճ ժամանակամիջոցում հսկայական փչակ է առաջանում: Տեղացիները փորում, կարգի են գցում այդ փչակները, զանազան նպատակներով օգտագործելու համար: Նախկինում*



Բրախիխիտոն

այդ փչակներում կախում էին այն մարդկանց դիակները, որոնց տեղացիները հրաժարվում էին թաղել ավանդական ձեսերով: Եվ զարմանալին այն է, որ այստեղ դիակները մումիայի էին վերածվում, առանց նախնական մշակության ու զմռսման: Ճանապարհորդ միսիոներ Դեվիդ Լիվինգստոնը հայտնում է, որ խոշոր բաոբաբի փչակում ազատ կերպով կարող են տեղավորվել 25—30 մարդ: Ավստրալիայի հյուսիսում, երկու հազարամյա բաոբաբի բնի հսկայական փչակում մի ժամանակ տեղավորված էր քաղաքային բանտը:

Ապշեցնում է բաոբաբի արտակարգ կենսունակությունը: Նույնիսկ այն ժամանակ, երբ հրդեհը լափում է այդ բույսի բնի զգալի մասը, նա շարունակում է աճել. կարծես թե ոչինչ չի պատահել: Քանի որ բաոբաբները աճում են չոր վայրերում, ապա նրանց արմատները ջրին հասնելու համար ծառի բնից երբեմն հեռանում են հարյուրավոր մետրերով:

Տեղացիները բաոբաբի կեղևից արտակարգ ամուր պարաններ կամ գործվածքներ են պատրաստում: Տերևները և ծեծած-մանրած կեղևը օգտագործում են որպես համեմունք: Թարմ տերևներից զովացուցիչ սալաթ են պատրաստում: Պտուղներն ուտում են:

Բաոբաբով սնվում են փղերը, երբեմն այլանդակելով կամ ամբողջովին ոչնչացնելով ծառը:

Մենք այժմ համոզված ենք, որ Մայքլ Ադանսոնը սխալվել է բաոբաբի տարիքը որոշելիս: Դա չափազանց դժվար է, քանի որ բաոբաբը տարեկան օղակներ չունի: Ժամանակակից մեթոդներով կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ամենահին բաոբաբի տարիքը չի անցնում 2800-ից: Եվ զարմանալին այն է, որ հազարամյա բաոբաբների բնի հաստությունը այլևս չի ավելանում: Դեռ ընդհակառակը, չորային տարիներին զգալիորեն պակասում է:

Հաստլիկ ծառերի թվին է պատկանում նաև ավստրալիական բրախիխիտոն ռուպեստրիսը: Այդ ծառի բունը հիշեցնում է 2 մետր տրամագիծ ունեցող մի հսկայական տակառ կամ ֆանտաստիկ շիշ, որի բարձրությունը հասնում է 15 մետրի: Բրախիխիտոնի բնի ներքևի մասը խիստ լայնացած է և մեծ քանակությամբ ջուր է պարունակում: Ջրի երկրորդ պահեստարանը գտնվում է բնի միջին մասում, և բուսաբան Ջեմս Օդեսի վկայությամբ, պարունակում է մեծ քանակությամբ քաղցրահամ, դոնդողանման հյութ, որը չափազանց սննդարար և օգտակար է:

Բրախիխիտոնը աճում է անջուր, ամայի անապատներում, և հասկանալի է, թե որքան կարևոր է այդ բույսը ծարավից տառապող ճանապարհորդների համար, որոնք ծակում են նրա բունը և հագեցնում իրենց ծարավը: Չափազանց համեղ են նաև բրախիխիտոնի պտուղները և երիտասարդ արմատները: Կեղևից ստանում են շատ ամուր թել:

«Հաստափոր» ծառերի թվին է պատկանում նաև Ամերիկայի արևադարձային անտառների ամենախոշոր բնակիչ սեյբան: Նրա բարձրությունը հասնում է 45 մետրի: Բավականին ուռուցիկ բնի ընդգրկումը հաճախ հասնում է 12 մետրի և ստորին մասերում սովորաբար ունենում է հզոր որմնահեց (կոնտրֆորս): Դրանք 4—5 մետր երկարությամբ և 15—30 սմ հաստությամբ պատրաստի տախտակներ են, որոնք օգտագործվում են շինարարության մեջ:

Սեյբան տալիս է բարձրորակ կեղևախցան, որը օգտագործվում է տնտեսության տարբեր բնագավառներում: Դրանից մեծամասամբ պատրաստում են փրրկարար գոտիներ և բարձիկներ: Սեյբայի կեղևախցանի 1 կիլոգրամը ջրի երեսին կարող է պահել 25 կգ ծանրություն:

Զարմանք է պատճառում սեյբա ծառի մեծ բազմազանությունը: Եթե երիտասարդ ծառերը աչքի են ընկնում խիստ փշոտ բնով, ապա հասակավորների բունը միանգամայն հարթ է: Նույն ծառի որոշ բներ երբեմն զուրկ են տերևներից, մյուսները ծածկված են երիտասարդ տերևներով, իսկ մի մասն էլ՝ հին տերևներով: Ծաղիկները նույնպես ատիճանաբար են հայտնվում, բացվելով մերթ այս, մերթ այն ճյուղերի վրա: Որոշ ծառերի ճյուղերը փշոտ են, մյուս-



«Սափոր» արմավենի



*Լենինգրադի «Կոստյոր» ամսագրի խնդրանքով, նրա ընթերցողները գրի են առնում իրենց լսած ժողովրդական հեքիաթներն ու զրույցները և ուղարկում խմբագրությանը, որոնցից ամենահետաքրքիրները տպագրվում են ամսագրի էջերում: Արտատպելով երրորդ դասարանցի Լարա Կոսենկովայի գրի առած հեքիաթը, խնդրում ենք մեր ընթերցողներին, հետևել «Կոստյորի» ընթերցողների օրինակին: Ձեր լսած, գրի առած և ուղարկած լավագույն հեքիաթներն ու զրույցները տեղ կգտնեն մեր ամսագրում:*

*«ՊԻՈՆԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

# ՄԱՐԴԻԿ ԻՆՉՈՒ ՉԳԻՏԵՆ, ԹԵ ԵՐԲ ԵՆ ՄԵՌՆԵԼՈՒ

Կար ժամանակ, երբ ամեն մարդ գիտեր, թե ինքը երբ է մեռնելու: Իսկ հիմա չգիտեն, և ահա թե ինչու:

Մի օր մի ծերունի իր բանջարանոցի շուրջը ցանկապատ էր շինում: Խփում էր մի ցիցը, հետո՝ երկրորդը, այնպես, անհավես, և ցանկապատը լավ չէր ստացվում:

Մի անցորդ տեսնում է ու ասում.

— Մա՛րդ աստծո, ինչո՞ւ ես ցանկապատդ այդքան վատ սարքում:

— Է՜հ,— պատասխանում է ծերունին,— ինձ երեք օր է մնացել ապրելու, այնպես որ ինձ այս էլ ձեռք կտա:

— Դու պատրաստիր այնպես, որ ուրիշներն էլ օգտվեն քո շինածից,— ասում է անցորդը:

Ծերունին չի լսում նրան, նույն ձևով շարունակում է իր գործը:

Անցնում է երեք օր, անցնում է մի տարի, երկու տարի, ծերունին չի մեռնում: Նա այլևս չի իմանում, թե երբ է մեռնելու: Եվ քանդում է վատ սարքած ցանկապատը և նորը, լավն է շինում, մտածելով, որ գուցե դեռ երկար է ապրելու:

Այն անցորդը, որ զրույցի բռնվեց նրա հետ, աստվածն է լինում: Աստված, այդ օրից որոշում է ամեն մարդուց գաղտնի պահել, թե երբ է նա մեռնելու, որպեսզի նա չմտածի միայն իր անձի մասին:

Ահա այդ օրվանից սկսած, մարդը այլևս չի իմանում, թե ինքը երբ է մեռնելու:

*ները՝ ոչ: Պտուղները նույնպես տարբերվում են իրենց ձևով ու մեծությամբ: Այս հանգամանքը դժվար կացության առաջ է կանգնեցնում բուսաբաններին, որոնք դժվարանում են տարբերել սելբայի տեսակները:*

*Սելբայի պտուղները պարունակում են մետաքսյա թելիկներ, «մետաքսաբամբակ», որը չորացած վիճակում բռնկվում է վառոդի նման: Եղել են դեպքեր, երբ տեղացիները լքել են իրենց գյուղերը միայն այն պատճառով, որ շրջակայքում մեծ քանակությամբ սելբայի ծառեր են աճել և առաջացել է հրդեհի մեծ վտանգ: Հնդկաստանում այդ մետաքսաբամբակները օգտագործում են հրավառությունների համար:*

*Հաստլիկ բույսերի ցանկը կարելի է եզրափակել կուբայական գմփոր արմավենով (կոլոպոտրինանքս վրիգթի): Այդ հետաքրքիր ծառի երկար բնի միջին մասը խիստ կերպով ուռած է խոշոր կենդանի կուլ տված վիշապ օձի նման: Արմավենու այդ գմփոր մասերը տեղացի վարպետները օգտագործում են տակառիկներ, փեթակներ, պահարաններ և նույնիսկ փոքր մակույկներ պատրաստելու համար:*



**Լրացավ գրող Արաքսի ծննդյան 70 տարին: Նա գրական, հասարակական երկար ու բեղմնավոր ճանապարհ է անցել: Ընկեր Արաքսը շատ է գրել նաև մանուկների համար, մեր ամսագրի ըստեղծման օրվանից նրա աշխատանքներին եռանդուն մասնակցություն է ցուցաբերել և երկար տարիներ հանդիսացել է նրա խմբագիրը: Շնորհավորելով վաստակած հեղինակին իր ծննդյան 70-ամյակի առթիվ՝ «Պիոներ»-ի խմբագրությունը, խմբագրական կոլեգիան և ընթերցողները ցանկանում են նրան ստեղծագործական նորանոր հաջողություններ:**

**Ստորև տպագրվում է ընկեր Արաքսի հուշերից մի հատված, որը վերաբերվում է մեր ամսագրի վաղ շրջանին:**

# ԵՐՋԱՆԻԿ ԱՍՏՂԻ ՏԱԿ ԾՆՎԱԾԸ

Մանկական գրական-գեղարվեստական ամսագիր հրատարակելու որոշումն արդեն կար: Բայց այնքան էլ հեշտ չէր առաջին համարը գլուխ բերել: Միակ վճարովի աշխատողը առայժմ ես էի, բնականաբար ծանրության մեծ մասն իմ ուսերին էր իջնում: Հիշում եմ ինչպես այսօր: Ձեռնափայտն ուժգին տըրկտըրկացնելով ու ծանր շնչելով, ներս մտավ Խնկո-Ապերը և հայրական փորովանքով ասաց.

— Աղջի՛կս, նյութերի համար բնավ չմտածես, պարտքս լինի ամեն համարին մի սիրուն վզնոց բերեմ՝ կախենք նորածնի վզից:

Եկավ ու նույնն ասավ նաև Հայրապետ Հայրապետյանը: Ապաստան փնտրող այդ երկու մանկագիրները իրենց բույնը գտած, թև ու թիկունք դարձան խմբագրությանը: Անասելի մեծ հետաքրքրություն էր առաջացրել ամսագիրը գրողների, արվեստագետների, երաժիշտների, նկարիչների, գիտնականների շրջանում: Գրեթե բոլորը՝ նշանավորից մինչև սկըսնակը, պատրաստակամ համախմբվեցին խմբագրության շուրջը:

Խմբագրությունը տեղավորված էր Աբովյանի վրա, լուսաժողկոմատի շենքի առաջին հարկի մի փոքրիկ սենյակում: Այդ նեղլիկ սենյակը դարձավ գրողների սիրած հավաքատեղիներից: Նորաստեղծ մանկական ամսագիրը իր սուղ էջերում օթևան էր տվել նաև նշանավոր երաժիշտների, նկարիչների, գիտնականների, բնագետների, աշխարհագրագետների: Հայ մեծ երաժիշտ կոմպոզիտոր Ռոմանոս Մելիքյանը հաճախ էր այցելում մեզ: Նա ձայնագրեց Խնկո-Ապոր մի շարք բանաստեղծությունները: Իր բարդու հասակն առած, մեր ցածլիկ առաստաղի տակ կռանալով, գալիս նստում էր կողքիս, երգը շրթին, երկար մատները տակտով զարկում էր սեղանին և բազմանշանակ նայում մեր աչքերի մեջ, հարցնում.

— Ինչպե՞ս է, ստացվե՞լ է...

Մանուկների համար ստեղծագործող կոմպոզիտոր Ազատ Մանուկյանը նույնպես մեծ էնտուզիազմով մասնակցում էր մեր աշխատանքներին, ուրախ կատակերգեր էր գրում: Նկարիչ Վ. Ախիկյանը, որ ժամանակին նկարազարդել էր «Հասկերը», չնայած տարիքին և հիվանդությանը, սիրով աշխատակցում էր նաև մեր ամսագրին: «Հասկեր»-ում նա հռչակվել էր Հովհ. Թումանյանի «Շունն ու կատուն» ձևավորելով:

Ձեռնպահ չմնաց նաև մեծանուն նկարիչ Մարտիրոս Սարյանը: Մի շարք տոնական համարների շապիկներ նկարազարդեց: Նաև՝ Կոջոյանն ու Գյուրջյանը: Երիտասարդ նկարիչներ Հովհ. Շավարշը և Միքայել Բաղդասարյանը շատ բան են պարտական «Հոկտեմբերիկին», «Հոկտեմբերիկն» էլ՝ իրենց:

Հեղինակները, առանց հրավերի, հաճախ էին հավաքվում խմբագրատանը, որի նեղլիկ պատերն ասես առաձգական լինեին, ետ էին գնում, ընդարձակվում: Քաղցր ու համով զրուցում էին, մեկը մյուսին լրացնում՝ Խնկո-Ապեր, Իսահակյան, Զորյան, Գ. Սարյան, Արազի, Մանվելյան: Վարպետն իր իմաստության մարգարիտներն էր շաղ տալիս: «Երեխաների համար գրելը, նրանց հոգուն տիրելը ամեն մարդու գործ չէ,— ասաց մի անգամ նա: Եվ գլուխը տմբտմբացնելով և կակազելով ավելացրեց.— Այդ շնորհքը առատորեն բաշխված է մեր երջանիկ Խնկոյին»: Զրուցակիցները պատկառանքով հաստատեցին Իսահակյանի ասածը: Իսկ ինքը՝ Խնկո-Ապերն այդ պահին մի անկյունում ձեռնափայտին կռթնած նընջում էր: Վարպետն ինքը մի շարք գեղեցիկ հեքիաթներով զարդարեց ամսագրի էջերը: Մեզ մշտապես այցելում էր նաև մեր արձակի նշանավոր դեմքերից՝ Դերենիկ Դեմիրճյանը, որի մտքով, սակայն չէր անցնում մանուկների համար գրելը: Բայց մեր բազմիցս խնդրանքներին տեղի տալով, մի գեղեցիկ օր, գրեց իր նշանավոր «Պույպույ մուկիկը»: Մեծ Եղիշե Չարենցը պայման դրեց. «Լավ չեմ հետևել ձեր ամսագրին, ուշադիր կընթերցեմ, եթե հավանեցի՝ կգրեմ»: Եվ թերթելով մի քանի համար, մեր բախտից՝ հավանեց, անկեղծորեն խոստովանեց այդ, ասելով, գոհ է, որ նախ տառասխալ չի գտել ամսագրում, իսկ դա

շատ կարևոր է համարում ինքը: Նրան անչափ դուր էր եկել արևելյան ժողովրդական մի առած «Կատվին ի՞նչ անուն տալ» վերնագրով: Տատն ու պապը շարունակ վիճում էին, թե իրենց սիրեցյալ կատվին ինչ անուն տան: Վերջում գալիս են այն եզրակացության, որ կատվին կատու էլ պետք է անվանել: Չարենցը ոգևորված, իր կրծքային ձայնով, հնաշունչ կրկնում էր.— «Այդ առածը իմաստուն է նրանով, որ սովորեցնում է իրերն իրենց անունով կոչել: Թե չէ մեզանում երբեմն անճարին հանճար են ասում, իսկ իսկական հանճարին՝ բանջար: Թող մեր երեխաները սովորեն իրերն իսկական անունով կոչել...»

Եվ Չարենցը գրեց մեզ համար իր «Մի հոկտեմբերիկի» բանաստեղծությունը, որ չարենցյան գոհարներից է հանդիսանում:

Ամսագրի շապիկի վերջին երեսին երեխաների սեփական վրձնախաղերն էին տպագրվում: Պայծառ աչիկներով, շրջապատի երևույթները յուրովի ընկալելով, իրենց դալար թաթիկներով գծմծում էին: Մեծ վարպետը՝ Մ. Սարյանը գալիս էր խմբագրություն, նայում այդ նկարները, հիանում: «Երեխաների նկարները զարմանալի դինամիկ են,— ասում էր նա,— մենք մեծերս այդպես նկարել չենք կարող»:

Կյանքի բնական օրենքով, տեղատվություն է կատարվում: Մանկական գրականության և առհասարակ գրական երեկվա դեմքերից շատերն այսօր կյանքի բեմից հեռացել են, չկան: Նրանց տեղը երիտասարդներն են գրավել:

Ասում են, ծաղկող դաշտը միշտ պետք է ծաղկի...

Տարիների ընթացքում մեր մանկական ամսագիրը ծլարձակեց, մեկը դարձավ երկուս՝ «Պիոներ» և «Ծիծեռնակ», և բազմապատկվեցին նրա հեղինակներն ու ընթերցողները:

Ամենաջերմագին ողջույններս «Պիոներ» և «Ծիծեռնակ» պարբերականներին ու նրա մատղաշ, լուսատիտիկ ընթերցողներին:




Խորդենու հայրենիքը Ալժիրն է: Դարեր շարունակ Ալժիրի արևն ու ջուրը սնուցել են խորդենու բուրավետ թփուտները:

Սովետական Միություն՝ Աբխազական ԱՍՍՀ խորդենին մուտք է գործել 1926 թվականին: 1936 թվականից սկսած՝ խորդենին աճում է նաև Հայաստանում: Եվ այժմ Հայաստանը տալիս է ՍՍՀՄ-ում ստացվող խորդենու յուղի 45 %-ը: Խորդենու յուղը դառնում է օծանելիք. դեղորայք: Սննդարդյունաբերության մեջ խորդենին հաճելի համեմունք է, իսկ որպես նուրբ մեխանիզմների քսայուղ անփոխարինելի է, որովհետև ցածր ջերմաստիճանում չի սառչում:

Մեկ գրամ խորդենու յուղ ստանալու համար հարկավոր է մշակել 1 կգ ավելի կանաչ զանգված: Այդ աշխատանքը կատարվում է Հոկտեմբերյանի շրջանի Նոր-Կեսարիայի եթերա-յուղային սովխոզգործարանում: Բայց որքա՞ն ջանքեր են հարկավոր խորդենի աճեցնելու համար:

Այդ մասին շատ լավ կարող է պատմել Հոկտեմբերյանի շրջանի յուրաքանչյուր դպրոցական, մանավանդ նրանք, ովքեր անմիջականորեն մասնակցում են խորդենու աճեցման ու բերքահավաքի աշխատանքներին: Բուրավետ ու քմահաճ այս բույսը աճում է 28 կոլտնտեսությունների ու Նոր-Կեսարիայի եթերա-յուղային սովխոզի գործարանի պլանտացիաներում, և ամենուր դպրոցականները մեծ օգնություն են ցույց տալիս:

Մի շարք գյուղերի դպրոցներում ստեղծված են արտադրական բրիգադներ, որոնք խորդենու մշակման գործում օգնում են կոլտնտեսությանը:

Հոկտեմբեր գյուղի միջնակարգ դպրոցի արտադրական բրիգադի 10 օղակներում ընդգրկված են 172 աշակերտ: Նրանք ունեն իրենց փորձադաշտը, որտեղ մեկ ու կես հեկտարը զբաղեցնում է խորդենին: Բոլոր աշխատանքներն այստեղ կատարում են իրենք՝ երեխաները: Անցյալ տարի նրանք կտրել էին կոլտնտեսությանն անհրաժեշտ կտրոնների ամբողջ քանակությունը՝ չորս ու կես միլիոն: Աչքի ընկած օղակավարուհիներ՝ 10-րդ դասարանցի Անուշ Գրիգորյանն ու Շահանդուխտ Մարտիրոսյանը հաճույքով ու սիրով են պատմում, թե ինչպես են կտրոնները ձմեռը պահում ջերմատներում, գարնանը տեղափոխում դաշտ: Ճիշտ է, սածիլները մեքենաներն են տնկում, բայց դրանք աշխատեցնողները, սածիլով պահողները մարդիկ են: Երբ սկսվեց պլանտացիաների փխրեցումը, տրակտորները վարում էին դպրոցականները: Արտադրական ուսուցման ժամերին կամ դասերից հետո տրակտորի ղեկի մոտ նստում էին 10-րդ դասարանցի Բաբկեն Վարդանյանը, յոթերորդ դասարանցի Սարգիս Հակոբյանը, արտադրական բրիգադի շատ այլ անդամներ: Նրանք դաշտում անցկացրին ամառային արձակուրդների մեծ մասը:

Բուրավետ խորդենին աճեց ու փարթամացավ ոչ միայն կոլտնտեսականների, այլև դպրոցի արտադրական բրիգադի ձեռքերով: Երբ սկսվեց բերքահավաքը, վեցերորդ դասարանցիներ Մեդորա Աբրահամյանը, Զարմինե Հակոբյանը, Սվետլանա Հովսեփյանը

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱ՛Ն ԺԱՄԱ՛ՆՑ

*Նայելով գծագրին, դուք կարող եք կարդալ աշխարհագրական տարբեր անուններ: Մեզ հաջողվել է կարդալ 47 այդպիսի անուն: Իսկ ձե՞զ...*

*Կազմեց ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ*



### ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ «ՊԻՈՆԵՐ» № 2

#### ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

*1. «Մարսելիեզ»: 2. Գասպարյան: 3. Շերամ: 4. «Անուշ»: 5. Մանդոլինա: 6. Կոմիտաս: 7. Չուխաջյան: 8. «Սպարտակ»: 9. Սարյան: 10. Շալյապին: 11. Կանտատա:*

*— Սպենդիարյան*

և շատ ուրիշներ դաշտ էին գնում կոլտնտեսականներից էլ շուտ՝ վաղ լուսաբացին: Աշակերտները իրենց հողատարածության հեկտարից ստացան 318 ցենտներ կանաչ զանգված, որը բարձր է շրջանի խորդենու միջին բերքատվությունից:

Երբ փակվեց գյուղատնտեսական աշխատանքների տարին, արտադրական բրիգադի հաշվին գրանցված էր 5329 աշխօր: Յուրաքանչյուր աշակերտ վաստակել էր 35—40 աշխօր՝ մեծ մասը խորդենու մշակության ու բերքահավաքի դիմաց:

... Ամբողջ ձմեռը բուրավետ խորդենու արմատակալած կտրոնները ջերմատներում սպասում էին գարնանը: Գարնան գալուն էին սպասում Հոկտեմբեր գյուղի միջնակարգ դպրոցի արտադրական բրիգադում ընդգրկված աշակերտները...

Եվ ահա գարունը եկավ:

*Հ. ՀԱԿՈԲՅԱՆ*
*Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ*



Լույս է տեսնում 1923 թվականից:

# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1974 թ.

ՀԼԿՍՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина/Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 04136: Պատվեր՝ 175: Տպաքանակ՝ 80500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 4/III 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 Կ.     ԻՆԴԵՔՍ՝ 77806



# ՁՆԾԱՂԻԿ

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Նկ. ԱՐՈՒՍՅԱԿ ԳԱՐՈՆՅԱՆԻ

Քե՞զ նման լինել այս մեծ աշխարհում,
Կապո՛ւյտ ձնծաղիկ, ձնծաղի՛կ իմ ջինջ,
Դու ամպակուտակ, մեր ցուրտ սարերում
Ժպտում ես մարդկանց ձյուների միջից:

Դու ողջունում ես գարթոնքը գարնան,
Անուշ ծաղկումը մեր սարալանջի,
Թովիչ գարուն ես բերում մեզ համար՝
Դառնալով նրա ժպիտն առաջին: